# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
# №: 4 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկի 1-ին և 4-րդ էջերի լուսանկարները՝

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԼԱՋՅԱՆԻ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

**ԶՈՅԱ ՎՈՍԿՐԵՍԵՆՍԿԱՅԱ**
ՍՍՀՄ պետական և լենինյան կոմերիտմիության մրցանակների դափնեկիր

# ՓՇԵՐԻ ՄԻՋՈՎ ԴԵՊԻ ԱՍՏՂԵՐԸ

Ուլյանովսկից Սիզրան տանող ճանապարհի մոտ, զբոսայգու կանաչ ֆոնի վրա կանգնած է մի հուշարձան: Բաց գույնի մարմարե բարձր պատվանդան, իսկ պատվանդանին՝ մտածողի ճակատով, ետ սանրած մազերով ու մորուքով մարդու բրոնզե կիսանդրի: Գլուխը բարձր պահած, մեղմ կորվածքով, կկոցած բարի աչքերի հայացքը դեպի հեռուներն է ուղղված:

Պատվանդանի որմնախորշում, կարծես վատ եղանակից պաշտպանություն գտնելով, պատսպարվել է պատանի մի հովիվ: Աջ ձեռքով նա հենվել է մահակին, ձախով՝ բաց գիրք բռնել, հրաշքի հետ առնչվելուց ոգևորություն ու զարմանք կա հայացքում: Կուրծքն ալեկոծող հուզմունքից նա շոգել է, ուսերից նետած կապան նրա ոտքերի մոտ է ընկած:

Պատվանդանի հարթ պատին փորագրված է.

Իլյա
Նիկոլաևիչ
ՈՒԼՅԱՆՈՎ
1831—1886

Զինվորներ են քայլում ճանապարհով և հուշարձանի կողքից անցնելիս՝ շարքն ուղղում են, աչքթևայինները գլուխները դարձնում են Իլյա Նիկոլաևիչի կողմը: Դպրոցականներ են արշավի գնում, պիոներական ողջույն են տալիս:

Իսկ նրա մեծ որդին Վոլգայի ափին վեր է խոյացել, դեմքը դեպի հայրը դարձրած, ազատաշունչ հողմից վերարկուի փեշերը ետ են գնացել, գլխաբաց՝ քայլում է նա ողջ մոլորակով:

Զարմանալի և ուսանելի է Իլյա Նիկոլաևիչի՝ այդ իմաստուն, բարի, բնքշագույն և ազնվագույն մարդու, ռուս ականավոր լուսավորչի, մարդկության հանճար Վլադիմիր Իլյիչ Ուլյանովի հոր, ճակատագիրը:

Իլյա Նիկոլաևիչը ծնվել է Աստրախանում: Նրա հայրը դերձակ էր, աշխատում էր արհեստանոցում, և վախճանվել է, երբ Իլյա Նիկոլաևիչը յոթ տարեկան էր: Հայրը տղային մտքում մնացել էր ձևարարական սեղանի առջև նստած, ոտքերը խաչած ու ասեղի վրա խոնարհված: Փոքրիկ Իլյայի դաստիարակությամբ զբաղվել էր ավագ եղբայրը՝ Վասիլին, որի տասնյոթն էր այդ ժամանակ լրացել: Գիտելիքների ձգտող Վասիլին նկատեց, որ Իլյան իրենից ընդունակ է, թեև ֆիզիկապես ավելի թույլ է, այդ պատճառով իր վրա վերցրեց նրա կրթության բոլոր հոգսերը: Իլյա Նիկոլաևիչը իր ամբողջ կյանքում շնորհակալությամբ է հիշել Վասիլի Նիկոլաևիչին, որը մինչև վերջը հավատարիմ եղբայր էր եղել նրա համար: Ժամանակ և ուժ չխնայելով, Վասիլին զրկում էր իրեն ամեն բանից, աշխատում էր աղի փոխադրման վայրերում որպես գործակատար, ցրիչ: Նույնիսկ ընտանիք չկազմեց, որպեսզի կրթության տա կրտսեր եղբորը: Իլյան աշխա-

տում էր արդարացնել Վասիլիի հույսերը և արծաթե մեդալով ավարտեց գիմնազիան: Գիտելիքների ծարավից պապակ, եղբոր կողմից խրախուսված, Իլյա Նիկոլաևիչը, հաղթահարելով բոլոր խոչընդոտները, Կազանի համալսարանի ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետի ուսանող դարձավ: Նա եղբոր հետ ամենածանր պայմաններում էր ապրում: Վասիլիի խնդրանքով Աստրախանի գիմնազիայի դիրեկտորը դիմեց Կազանի ուսումնական շրջանի հոգաբարձուին, միջնորդելով կրթական թոշակ նշանակել «շնորհալի պատանի» Իլյա Ուլյանովին: Հետևեց պատասխանը՝ «մեշչանական դասին պատկանող Ուլյանովին... թոշակառուների թվում ընդգրկելու... բավական հիմք չկա»: Գուցե հրաժարվե՞լ բարձրագույն կրթություն ստանալու մտքից, հեռանա՞լ համալսարանից, գնալ փո՞ղ աշխատելու: «Ո՛չ, ո՛չ,— պնդում էր Վասիլին:— Կդիմանանք, չենք կանգնի կես ճանապարհին»:

Իլյան սկսեց դասեր տալ ետ մնացող աշակերտներին: Նա տարված էր օդերևութաբանությամբ. աստղաբաշխությամբ: Նրա դիպլոմային աշխատանքը կրում էր հետևյալ վերնագիրը. «Օլբերսի եղանակն ու նրա օգտագործումը Կլինկերֆյուսի գիսաստղի ուղեծիրը որոշելիս»: Այս աշխատանքը ֆակուլտետի կողմից խրախուսվեց, և նրա համար Իլյա Նիկոլաևիչը թեկնածուի գիտական աստիճան ստացավ՝ «բոլոր իրավունքներով և առավելություններով հանդերձ»:

Օլբերսն ու Կլինկերֆյուսը գերմանացի աստղաբաշխներ էին: Իլյա Նիկոլաևիչը կարդացել էր նրանց բոլոր աշխատությունները Լուսնի բլուրների բարձրությունը, գիսաստղերի ուղեծիրը որոշելու մասին և ինքն էլ ժամանակ էր գտնում աստղադիտարանում աշխատելու համար: Հայտնի է նրա «Ամպրոպի և շանթարգելների մասին» գիտական աշխատությունը: Հետաքրքրությունը աստղաբաշխության նկատմամբ նա պահպանեց մինչև կյանքի վերջը և դրան հաղորդակից դարձրեց իր բոլոր երեխաներին, սովորեցնելով նրանց կարդալ աստղաշատ երկինքը:

Համալսարանն ավարտելուց հետո Իլյա Նիկոլաևիչը տասնչորս տարի մաթեմատիկա է դասավանդել Պենզայի ազնվականական ինստիտուտում և այնուհետև Նիժնի Նովգորոդի գիմնազիայում: Սակայն ո՛չ զուտ մաթեմատիկան, ո՛չ էլ աստղաբաշխությունն ու օդերևութաբանությունն էին նրա իսկական կոչումը, այլ՝ ժողովրդական մասսաների լուսավորությունը: Նրան հետաքրքրում էր առաջադեմ մանկավարժությունը, նա Ուշինսկու ուսմունքի, Դոբրոլյուբովի, Չեռնիշևսկու և Տոլստոյի հետևորդն էր:

1869 թվին Իլյա Նիկոլաևիչը թողնում է գիմնազիայի դասատուի հանգիստ գործը ու նահանգի ժողովրդական ուսումնարանների հրահանգչի պաշտոնով գնում է Սիմբիրսկ:

Ձեռք բերված գիտելիքները, մանկավարժական փորձը, աշխատանքի մարդկանց ծառայելու ձգտումը, որոնց միջավայրից դուրս էր եկել և ինքը, դրդեցին նրան հանձն առնել շրջագայող հրահանգչի դժվարին գործը:

Իլյա Նիկոլաևիչի կողքին էր իր կյանքի ընկերուհին՝ Մարիա Ալեքսանդրովնան, որը հավանություն տվեց նրա ընտրությանը, համաձայնեց կիսել նրա հետ ճակատագրի բոլոր փոփոխությունները: Ուլյանովներն արդեն երկու երեխա ունեին. Աննան ու Սաշան, և սպասում էին երրորդին:

— Քեզ համար դժվար կլինի երեխաներին կառավարել, Մաշենկա, ես շարունակ շրջագայության մեջ եմ լինելու, ռոճիկս էլ մեծ չէ...

— Կկառավարեմ տնտեսությունն էլ, երեխաներին էլ: Իզուր չեմ քննություն տվել ու ստացել տնային ուսուցչուհու կոչում,— պատասխանում էր կինը:

1869 թվի սեպտեմբերին ընտանիքը տեղափոխվեց Սիմբիրսկ: Բնակվեցին քաղաքի ծայրամասային, այսպես կոչված «Ստարի Վենեց» թաղամասում: Լուսամուտների առաջ Վոլգայի ազատահոս ջրերը, ձախից՝ բանտը:

Սկսվեց աշնանային ճամփախափանքը: Իլյա Նիկոլաևիչը որոշեց ծանոթանալ դպրոցներին: Գնում էր երկար ժամանակով, տուն դառնալուն պես բաժանում էր կնոջ՝ իր սիրելի Մաշենկայի հետ դիտողությունները, հուսախաբությունները ու ծրագրերը: «Թղթի վրա դպրոցների թիվը մոտ յոթ հարյուր էր, իրականում չափազանց քիչ: Երեխաներին սովորեցնում են կիսագրագետ, տգետ ենթասպաները, գյուղական գրագիրները կամ ցրնդած և նույնքան կիսագրագետ տիկինները: Մեկ տարվա ընթացքում երեխաները կարդալ չեն կարողանում սովորել: Նրանց անխնա ծեծում են: Հասկանու՞մ ես, Մա՛շենկա, քանոնով խփում են գլխներին, ձեռքերին, պատահում է և՝ ճիպոտով ու կաշեփոկերով: Ես դրան վերջ կտամ»:

Մարիա Ալեքսանդրովնան ու երեխաները անհամբերությամբ էին սպասում Իլյա Նիկոլաևիչի վերադարձին, պատրաստվում էին այդ օրվան, ինչպես տոնին էին պատրաստվում:

1870 թվի ապրիլի 10 (22)-ին ընտանիքում

երրորդ երեխան ծնվեց, տղա, անունը դրեցին Վլադիմիր:

Այդ տարի Իլյա Նիկոլաևիչը եղավ վաթսունվեց դպրոցում և զննեց դպրոցական շենքերը, ծանոթացավ ուսուցիչներին, աշակերտներին, ծրագրերին, եղավ դասերին, ցուցադրական դասեր տվեց: Ճանապարհորդում էր անձրևին ու քամուն, ձիերով խրվում էր ցեխում, բքի սպիտակ մրրիկներում թափառում, տանջվում փայտոջիլներով առատ իջևանատներում, ծխախեղդ լինում խրճիթներում, սակայն ամենածանր տառապանքը նրա համար այն էր, երբ տեսնում էր, թե ինչպիսի կարիքի մեջ են ապրում ուսուցիչները, հատկապես ուսուցչուհիները: Քաղաքավարի ու մեղմ Իլյա Նիկոլաևիչը անզիջում ու աննահանջ էր կառավարական հիմնարկություններից ուսուցիչների ռոճիկների բարձրացման, նրանց բնակարաններով, բժշկական օգնությամբ, գրականությամբ, թոշակներով, դըպրոցները դասագրքերով և ուսումնական պիտույքներով ապահովելու պահանջներում: Նա կարողանում էր փնտրել, գտնել և ընտրել մարդկային տաղանդներ, ժողովրդական լուսավորության գործին սիրահարված, թեև ոչ բավականաչափ պատրաստված մարդկանց: Այդպիսի խանդավառ ուսուցիչների համար նա ստեղծում էր մանկավարժական դասընթացներ, կազմակերպում էր գյուղական ուսուցիչների համագումարներ, որտեղ նրանք կարող էին փորձ փոխանակել, դասավանդման նոր, առաջադիմական մեթոդներ ընդօրինակել: Իլյա Նիկոլաևիչը միշտ շրջապատված էր երիտասարդությամբ, որին շռայլորեն հաղորդում էր իր գիտելիքները:

Մանկավարժի ու դաստիարակի նրա տաղանդը անհատնում էր, նա կարողանում էր իսկական եղբայրության մթնոլորտ ստեղծել:

1874 թվի հուլիսին Իլյա Նիկոլաևիչը Սիմբիրսկի նահանգի ժողովրդական ուսումնարանների դիրեկտոր նշանակվեց: Այժմ արդեն ավելի հաճախ էր տանը լինում: Նրա պաշտոնական աշխատասենյակն իր տանն էր գտնվում, նա նույնիսկ քարտուղար չուներ: Ուներ միայն պետական ձի և կառապան, որը միաժամանակ ցրիչի ու վառարան վառողի պարտականություններ էր կատարում: Գարնանն ու աշնանը սայլով, ձմռանը՝ սահնակով, Իլյա Նիկոլաևիչը ուսումնական տարվա ընթացքում միջին թվով յոթանասուն այցելություն էր կատարում գյուղական դպրոցները, որոնք հյուսիսից հարավ հինգ հարյուր կիլոմետր տարածության վրա ցրված էին:

Իլյա Նիկոլաևիչի հատուկ հոգատարության առարկան էր ոչ ռուս ազգությունների՝ չուվաշների, մորդվինների, թաթարների, լուսավորության խնդիրը: Այս դպրոցների համար Ի. Ն. Ուլյանովն այնպիսի ուսուցիչներ էր ընտրում ու պատրաստում, որոնք դասավանդությունը չուվաշերեն ու մորդովերեն կարողանային վարել: Արդեն քաղաքացիական գեներալի (իսկական պետական խորհրդականի) աստիճան ունենալով, Իլյա Նիկոլաևիչը անձամբ էր շրջագայում չուվաշական ու մորդովական գյուղերը, հավաքում էր գյուղացիներին, նրանց հետ զրույց վարում կրթության օգտակարության մասին, երեխաներին դպրոցները ներգրավում:

Ընտանիքում արդեն վեց երեխա կար, երեք տղա և երեք աղջիկ: Մարիա Ալեքսանդրովնայի՝ տնտեսությունը խնայողությամբ վարելու ջանքերով մի գումար էր գոյացել, որով տուն գնեցին քաղաքի ամայի մի թաղամասում:

— Այստեղ հրաշալի այգի է լինելու,— ասաց Մարիա Ալեքսանդրովնան երեխաներին:

— Բայց այս գերանը պետք է վերացնել, սա խանգարում է բոլորին,— ասաց Սաշան:

— Սա մեզ լավ կծառայի, հրաշալի կաղնի է,— առարկեց Իլյա Նիկոլաևիչը:— Սրանից աթոռներ կշինենք մեր տան համար:

Տանը կային միայն ամենաանհրաժեշտ իրեր: Ամենաթանկը համարվում էին գրքերը: Հավաքածուի համար չէին, այլ կարդալու: Գրադարակի վրա յուրաքանչյուրն իր սիրելի գրքերն ուներ: Իլյա Նիկոլաևիչը ընտանիքի համար ամսագրեր էր բաժանորդագրվում. «Детское чтение» («Մանկական ընթերցանություն»), «Семья и школа» («Ընտանիք և դպրոց»), «Задушевное слово» («Սրտալի խոսք»), «Родник» («Աղբյուր»), «Современник» («Ժամանակակից»), «Отечественные записки» («Հայրենական նոթեր»), «Вестник Европы» (Եվրոպայի լրատու»), «Русские ведомости» («Ռուսական տեղեկագիր») թերթը, մանկավարժական գրքեր ու ամսագրեր: Ընտանիքի սիրելի բանաստեղծը Նեկրասովն էր: Նրա ստեղծագործությունները նորից ու նորից էին կարդում բարձրաձայն: «Ես Նեկրասովի բանաստեղծություններով եմ դաստիարակված»,— հետագայում գրում էր Լենինը: Երեխաների ընթերցանությունը ծնողներն էին ղեկավարում: «Մարդը չի կարող բոլոր գրքերը կարդալ, նույնիսկ եթե ողջ կյանքում զբաղվի միայն ընթերցանությամբ,— ասում էր Իլյա Նիկոլաևիչը:— Պետք է կար-

դալ մարդկության ստեղծած ամենահույակապը: «Ուլյանովների երեխաները շատ վաղ էին ծանոթանում դասական գրականությանը. Պուշկինին, Լերմոնտովին, Գոգոլին, Տուրգենևին, Չեռնիշևսկուն, Դոբրոլյուբովին, Պիսարևին, Սալտիկով-Շչեդրինին, Ռիլեևին, Տյուտչևին... Անգիր էին սովորում հավանած բանաստեղծությունները:

Տղաների մեջ Իլյա Նիկոլաևիչը ասպետական հատկություններ էր դաստիարակում փոքրերի, կանանց, աշխատավոր մարդկանց նկատմամբ: Ուլյանովների ընտանիքում արիստոկրատիզմի ոգին զուգակցվում էր աշխատանքային դաստիարակության, ֆիզիկական մարզվածության հետ: Նրանց տանը երեկոները երգ, երաժշտություն էր հնչում: Ինքը՝ Իլյա Նիկոլաևիչը սիրում էր երգել:

Եվ հաճախ տուն գալով, պաշտոնական համազգեստը հանելով, ձեռքերը տղաների ուսերին դրած, երգում էր.

Մենք հոգևոր եղբայրներ ենք, ես ու դու,
Մենք երկուսս էլ հավատում ենք քավության:
Եվ մինչև մահ-գերեզման ատելու ենք
շարունակ
Հայրենի երկիրը հարստահարողներին:
Սիրտդ, գիտեմ, սուրբ ճշմարտության
Սիրով է ջերմ բաբախում:
Եվ հավատում եմ, որ անկաշառ ձայնիս
Կարձագանքի անհապաղ....

Սաշան ու Վոլոդյան հոր հետ միասին իրենց ողջ հոգին էին դնում երգի մեջ: Իլյա Նիկոլաևիչը կյանքի մեծ սխրանքի էր պատրաստում իր որդիներին: Նրա կյանքի նշանաբանն էր. ՓՇԵՐԻ ՄԻՋՈՎ՝ ԴԵՊԻ ԱՍՏՂԵՐԸ:

1882 թվին երկարամյա մանկավարժական գործունեության համար Իլյա Նիկոլաևիչը պարգևատրվեց 3-րդ կարգի Վլադիմիրի շքանշանով, որը ժառանգական ազնվականության իրավունք էր վերապահում նրան, սակայն նա այդպես էլ չձևակերպեց այն:

Մեռավ Իլյա Նիկոլաևիչը կյանքի հիսունհինգերորդ տարում, աշխատանքի պահին, իր վերջին տարեկան հաշվետվությունը կազմելիս:

Տասնվեց տարվա ընթացքում նա 345 նոր դպրոց բացեց նահանգում, սովորողների թիվը տասն անգամ ավելացավ: Նա ժողովրդական ուսուցիչների մի մեծ սերունդ դաստիարակեց, և նրա անունը մեր հայրենիքի մեծ լուսավորիչների առաջին շարքում է գրտնըվում:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐՈՅԱՆ

# ԲԱՑՎԻ՛Ր, ԱՌԱՎՈ՛Տ



Բացվի՛ր, առավո՛տ, կանչով ծիծառի
Եվ գարնան գգվող արևի շողով,
Դողդոջ մայունով նորածին գառի,
Հոգի պարուրող քո քաղցր դողով:

Գիշերը հալված վտակները ձյան
Պատուհանիս տակ օրոր երգեցին,
Հարավից եկող կռունկներն անցան
Եվ գարնան անուշ բույրեր բերեցին:

Ու հոգիս հիմա, խենթ-խելառ որպես,
Ուզում է կուրծքս պատռի, դուրս թռչի,
Եվ հողից հուշիկ ելնող ծիլի պես
Բույրերն եմ խմում արևի շնչի:

Բացվի՛ր, առավո՛տ, իմ լեռնաշխարհում,
Դաշտերից այցի մանուկներ կգան,
Գարո՛ւն, ծաղիկնե՛ր սփռիր դաշտերում,
Որ նրանք գտնեն և ուրախանան:



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ՆԻԼԻԿՅԱՆԻ

# Ստեղծագործում են դպրոցականները

Մանուշակագույն սարերը հեռվում
Անուշ նիրհում են՝
Երկինքը առած իրենց ուսերին,
Արևաշաղախ այդ լռությունը
Ես լուռ ըմպում եմ
Ու ձուլվում դանդաղ
Մանուշակագույն օրվա լույսերին:
Քանզի լույսի մեջ
Ավելի լավ եմ ես ինձ ընկալում
Ու չեմ հավատում,
Որ լույսն ինձ մի օր, մի օր կխաբի...

ՆԱՂԱՇ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Էջմիածնի շրջ. Դաշտ գյուղի դպրոց,
8-րդ դասարան

## ԵՐԵԿՈ

Փողոցում արդեն
Լույսերն են վառվել,
Ու երեկոն է
Քնքշորեն նիրհում:
Երեկոյի նուրբ
Թևերին փարվել,
Այս ի՞նչ հեքիաթ է
Լուսինը պատմում:
Երեկոյի նուրբ
Թևերին փարվել,
Երազ է մաղում
Աշխարհի վրա,
Եվ մենք էլ ահա
Աչքներս հառել,
Ականջ ենք դնում
Հեքիաթին նրա...

## ԳԱՐՈՒՆ

Պճնել ես նորից դաշտ ու անտառ,
Ծաղիկներ ես փռել գունեղ,
Աղբյուրների լեզվով ճարտար
Օրհնում ես դու աշխարհին ծեր:
Հեռուներից ես դու եկել,
Որպես կանաչ ու պերճ երազ,
Քեզ կարոտող սրտերը մեր
Բաց ենք արել մենք քո առաջ:

## ԳԱՐՆԱՆԱՄՈՒՏ

Մի գեղեցիկ, չքնաղ աղջիկ
Քաղաք մտավ՝ հեզ ու նազիկ,
Նա քայլում էր շորորալով,
Ոսկի հյուսքերը շաղ տալով:
Պճրանք ուներ նա անքանակ,
Գլխին՝ քնքուշ ծաղկեպսակ,
Լճակի պես աչքեր ուներ,
Պայծառ ու ջինջ ինչպես եթեր:
Մեջքին ուներ արծաթ գոտի,
Նման կայտառ մի առվակի,
Ձեռքին ուներ վառ ծիածան
Եվ ծաղիկներ նուրբ, աննման:
Նա քայլում էր՝ մեղմ ժպտալով,
Մարդկանց հրճվանք պատճառելով,
Ողջ քաղաքն էր կրկին դյութվել
Արևաշող նրա տեսքով:

ԼԱՈՒՐԱ ՍԱՐԳՍՅԱՆ
Լենինական, Ալ. Շիրվանզադեի անվ.
միջն. դպրոց, 8-րդ դասարան

## ԾԱՂԿԱԾ ԲԱԼԵՆԻՆ

Այսօր բալենին ծաղկել, զարդարվել.
Հարս գնացող աղջկա է նմանվել:
Այսօր բալենին ճերմակ շղարշով
Պարուրվել է իր ամբողջ հասակով:

Եվ շտապում են պարսերը մեղվի,
Նման են նրանք ժիր տղաների:
Թռչում են ահա դեպի բալենին
Ու նստում ծաղկանց տերևիկներին:

Գարուն է, արև...
Դաշտերի կանաչ գորգերի վրա
Այդ ո՞վ է հյուսել
Գույն-գույն ծաղիկներ
Վարդեր, կակաչներ ու երիցուկներ:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

## ԵՎ ԱՅՍ ԳԱՐՆԱՆ ԶԱՐԹՈՆՔԻՑ

Ես անցնում եմ փողոցով, ծաղիկները բալենու
Մեղմ նստում են ուսերիս փաթիլների պես քնքուշ,
Եվ այս գարնան զարթոնքից հոգիս լցվում է խինդով,
Հոգիս դառնում է հպարտ, դառնում է վեհ ու անհաղթ:

Ես քայլում եմ փողոցով, ծաղիկները բազմագույն
Գլխիկները խոնարհում, ինձ ողջույն են հաղորդում:
Եվ այս գարնան զարթոնքից սիրտս ուզում է պայթել,
Ինչպես բողբոջը ծառի գարնանային արևից:

ՕՖԵԼՅԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ
Ախուրյանի [illegible] Երասխավանի միջն. դպր.
10-րդ դասարան

ԳԵՎՈՐԳ ՍԱՐԳՍՅԱՆ

# ԱՂՋԻԿԸ ԵՎ ԱՂԱՎՆԻՆԵՐԸ



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ամեն առավոտ օդում երկար ճախրելուց, վեր ու վար սուրալուց հետո, աղավնիներն իջնում էին երկհարկանի տան պատըշգամբին, իրար կողքի շարվում բազրիքին ու արևի տակ տաքանում:

Ամեն առավոտ այդ պատշգամբի առջևով մի պատանի էր անցնում: Նա մի քանի վայրկյան կանգնում էր, ժպտալով, նայում թռչուններին, պայուսակը մի ձեռքից մյուսը տեղափոխում ու հետո միայն շարունակում ճանապարհը:

Այդ օրը տղան սովորականից ավելի երկար կանգնեց աղավնիներին նայելու: Նախ հաշվեց քանիսն են, հետո հաշվեց քանիսն են սև, քանիսը՝ սպիտակ, հետո՝ քանիսր մեծ, քանիսը՝ ճուտ: Այդ ժամանակ էլ պատշգամբ դուրս եկավ մի աղջիկ, նույնպես պայուսակը ձեռքին: Նա իսկույն նկատեց ժպտալով իր կողմը նայող տղային ու զարմացած կանգ առավ: Տղան քիչ հեռու նորից շրջվեց, նայեց աղջկա կողմը: Աղջիկը հպարտորեն երեսը շրջեց, սպասեց մինչև տղան թեքվի հաջորդ փողոցը և հետո միայն արագ իջավ սանդուղքով, շտապեց դպրոց:

Հաջորդ օրր աղջիկր դարձյալ տեսավ ժպտացող տղային: Տղայի ժպիտր այնքան պարզ էր ու անմիջական, որ աղջիկր որքան էլ ուզեց դեմքին խիստ արտահայտություն տալ՝ չկարողացավ և ինքն էլ ժպտաց:

Այնուհետև, ամեն առավոտ, նախքան տղայի երևալը, երկհարկանի տան պատուհանի վարագույրը շուտ-շուտ մի կողմ էր քաշվում և աղջիկը դեմքը մոտեցնելով ապակուն, նայում էր դուրս: Տղայի երևալու հետ պատշգամբ էր դուրս գալիս աղջիկը և զգուշությամբ շուրջը նայելով, ձեռքի աննկատ շարժումով ողջունում էր տղային ու պատասխան ողջույնի չսպասելով, շտապ իջնում էր սանդուղքով, նրանից առաջ ընկնում և առանց ետ նայելու գնում դպրոց: «Ութերորդցի կլինի, մի տարի է ինձնից մեծ, բայց երես առածն է երևում,— ամեն անգամ տղայից առաջ անցնելիս մտածում էր աղջիկը և

սպառնում,— ապա թող փորձի մոտենալ, խոսք ասել»:

Անցավ էլի մի քանի օր, բայց տղան մոտենալու փորձ չէր անում:

«Ամաչկոտն է երևում... սպասում է առիթի»,— մտածեց աղջիկը:

Էլի մի երկու օր անց, աղջիկը տղայից առաջ անցնելով, քայլերը դանդաղեցնում էր, թույլ տալիս, որ նա հավասարվի իրեն: Տղան հավասարվում էր ու առաջ անցնում, ո՛չ նայում էր, ո՛չ խոսում:

Մի առավոտ տղան չերևաց: Աղավնիները թռել էին իրենց սովորական տեղը և արևկող արած՝ ղունղունում էին: Աղջիկը վերցրեց նրանցից մեկին ու սկսեց շոյել:

Պատասխանի չկար:

Այտը սեղմած աղավնուն, աղջիկը մի քիչ էլ սպասեց, հետո զգուշությամբ վայր դրեց, վերցրեց պայուսակն ու իջավ փողոց:

Հաջորդ օրն էլ տղան չերևաց:

Երրորդ օրը աղջիկը որոշեց ավելի շատ սպասել: Նա մի փոքր հեռացավ տանից, քաշվեց մի կողմ ու աչքը փողոցի հեռուն՝ կանգնեց: Սպասեց հինգ րոպե, տասը, քսան, բայց տղան չկար ու չկար: «Առաջին դասից ուշացա»,— անցավ աղջկա մտքով, բայց նա չկարողացավ տեղից շարժվել: Օրը ցուրտ էր, և նա մի ձեռքը դպրոցական համազգեստի սպիտակ գոգնոցի տակ, մյուսով պայուսակը բռնած՝ տեղում ցատկոտում էր, որ տաքանա:

Մյուս օրը աղջիկը տանից դուրս եկավ մոր հետ: Մայրը փորձում էր ձեռքի ժակետը հագցնել, բայց աղջիկը համառում, չէր հագնում. ժակետը նոր զգեստի տեսքը կկորցներ: Ի վերջո աղջիկը հագավ ժակետը, իջավ փողոց: Բայց մի քանի քայլ անցնելուց հետո ետ նայեց ու տեսնելով, որ մայրը տուն է մտել, արագ հանեց, դրեց պայուսակը և կանգնելով երեկվա տեղում՝ պատի տակ, սպասեց տղային:

Դեռ նոր էր սկսել հաշվել վայրկյաններն ու դեռ չէր մտածել, թե ինչ է ասելու տղային՝ հանկարծ տեսավ նրան:

Որքան տղան մոտենում էր, այնքան ավելանում էր աղջկա հուզմունքը:

Ահա մնաց տասը քայլ, ինը, ութ, յոթ, վեց...

Տղան հավասարվեց աղջկան:

— Դուք հիվա՞նդ էիք,— երկչոտ հարցրեց աղջիկը:

Զարմացած անսպասելի հարցից, տղան կանգնեց.

— Այո՛, հիվանդ էի,— ասաց նա,— իսկ ինչո՞ւ եք հարցնում:

Աղջիկը շփոթվեց, նա այդպիսի պատասխան չէր սպասում: Նա ուզեց ինչ-որ բան հիշեցնել, բայց հարմար չգտավ և ըսպասեց, որ տղան ինքը հասկանա: «Ինչո՞ւ է ամաչում, ինչո՞ւ է թաքցնում»:

Ի վերջո տղան ասաց.

— Կուշանաք դասից... Ես էլ կուշանամ...

Աղջիկն անհանգստացավ: Նա մի ոտքից տեղափոխվեց մյուսին, հազաց, ուզեց խոսել, բայց դարձյալ ամաչեց, լռեց: «Ուշանալու մասին է խոսում»,— դժգոհեց նա, հետո արագ բացեց ու փակեց պայուսակը և նայելով տղայի աչքերին, հարցրեց.

— Դուք... ոչինչ չունե՞ք ինձ ասելու...

— Ե՞ս,— զարմացավ տղան,— ի՞նչ պետք է ասեմ, ես ձեզ առաջին անգամ եմ տեսնում:

Աղջիկը ցնցվեց.

— Առաջին անգա՞մ,— իր հերթին զարմացավ նա,— իսկ ամեն առավոտ ինչո՞ւ էիք նայում, ինչո՞ւ էիք ժպտում...

— Ե՞ս, նայում էի ձեզ ու ժպտո՞ւմ...

— Այո, պատշգամբում...

— Ի՞նչ պատշգամբ:

— Ա՛յ այն:

Տղան նայեց աղջկա ցույց տված կողմը և ծիծաղեց.

— Աղավնիների պատշգա՞մբը... Ես աղավնիներին էի նայում:

— Աղավնիների՞ն...

— Այո:

— Աղավնիների՞ն,— նորից հարցրեց աղջիկն ու նրա շրթունքները դողացին:

Նա արագ շրջեց դեմքը և հեռացավ:

Հաջորդ օրը աղավնիները շարված չէին պատշգամբում, բայց պատանին նույն տեղում կանգնած նայում էր: Նա սպասեց հինգ րոպե, տասը. «Առաջին դասից ուշացա»,— անցավ նրա մտքով, բայց տեղից չշարժվեց:

Իսկ պատուհանի վարագույրի ետևում կանգնած աղջիկը հրճվում էր, շատ լավ է, թող տղան դասից ուշանա... Ոչինչ, որ ինքն էլ է ուշանում:

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 5. ԿՐԻԱՆԵՐԸ... ԵՐԿՆՔՈՒՄ

Աշոտն ավարտելով համալսարանի երկրաբանական ֆակուլտետը՝ աշխատանքի նշանակվեց Ախթալայի հանքերում և դարձավ Լոռվա ձորերում մեր «մշտական ներկայացուցիչը»: Նա Ախթալա ավանի տղաներից մի փոքրիկ խումբ էր կազմել, նրանց սովորեցրել պարաններից օգտվելու ձևերը: Ինքը մագլցում էր, տղաները պարանը պահում էին, գործն առաջ էր գնում:

Մի անգամ ուշ աշնանը նա եկավ Երևան ու հայտնեց.

— Երեկ մի քարանձավ եմ մտել, եթե իմանաս, թե մեջը ինչ կար, կասեմ հայալ է քեզ:

Ի՞նչ կարող է լինել Հայաստանի քարանձավներում, որ մեզ զարմացնի:

— Հին գրքեր,— փորձեցի գուշակել ես:

— Չէ՛:

— Ջենք:

— Չէ՛:

— Գտածդ հի՞ն բան է, թե՞ նոր,— փորձեցի ճշտել ես:

— Ո՛չ հին է, ո՛չ էլ նոր,— ասաց ու ավելացրեց.— Հազար տարի էլ մտածես՝ չես գտնի:

— Դե լավ, որ այդպես է՝ դո՛ւ ասա,— հանձնվեցի ես:

— Սատկած կրիաներ,— ծիծաղեց նա:

— Ի՞նչ,— հիասթափված ծոր տվի ես,— բա դրա համար արժե՞ր, որ մարդ իր ընկերոջը չարչարի:

— Պատկերացրու, որ արժեր, ախր քարանձավը գետնի վրա չէ, այլ ժայռի մեջտեղում: Ես երկու ժամ կորցրի բարձրանալու վրա:

Դե, եթե ասողը Հայաստանի ժայռամագլցման բազմակի չեմպիոնն է, ուրեմն վայրը իսկապես անմատչելի է:

Հետո Աշոտը պատմեց, որ երբ ինքը քարանձավ է մագլցում, այնտեղ տեսնում է կրիայի հարյուրավոր զրահներ: Հաշվում է՝ հինգ հարյուրից ավելի:

Նա մի քանի հատ բերել էր հետը: Սովորական ջրային կրիայի զրահներ էին, շագանակագույն խալերով: Բայց այս հասարակ ոսկրի կտորները մեր հոգին հանելու էին: Սկսեցինք գլուխ կոտրել մտածելով, կրիաները ինչպես են հայտնվել անմատչելի անձավում: Այն էլ ոչ թե մեկերկուսը, այլ հարյուրներով:

Ամբողջ ձմեռը մտածում էինք: Մեկ ենթադրում էինք, որ այդ քարայրը կրիա-

ների բրածո գերեզմանոց է, սկզբից ցածում է եղել, հետո երկրաշարժերի հետեվանքով հայտնվել է քարափի մեջտեղում: Հետո հրաժարվեցինք այդ մտքից. Աշոտի բերած զրահները կարծես թե նոր էին: Ենթադրեցինք, որ դա կրիաների ժամանակակից գերեզմանոց է: Մահվան մոտիկությունը զգացող կրիաները ինչ-որ ճանապարհով գնացել ու սատկել են քարանձավի մեջ: Հետո էլ ճանապարհը փլվել է ու զրահները հայտնվել են անմատչելի անձավում: Ճիշտ է, մեզանից ոչ մեկը չի լսել, որ կրիաներն էլ են սատկելուց առաջ քաշվում քարանձավները: Բայց հո հաստատ գիտենք, որ, օրինակ, վայրի այծերը գնում են:

Հետո այդ ենթադրությունն էլ մերժվեց, որովհետև Աշոտը մի անգամ պատահաբար հիշեց, որ կարծես թե քարանձավի առջևում արհեստական պատի մնացորդ կար: Հենց որ այդ մասին իմացանք, հաստատ վճռեցինք, որ հին ժամանակներում մարդիկ պատսպարվել են այդտեղ ու սնվել կրիայի մսով, իսկ զրահները հավաքել են իրար գլխի:

Գարունը բացվելուն պես տղաները նորից գնացին կրիաների քարանձավը, որպեսզի տեղում ստուգեն այս ենթադրության իսկությունը: Քարանձավում, նրանց մտքով անցնում էր, թե ինչու մեծ զրահներ չկան: Եթե իսկապես մարդիկ են բերել, ապա ինչո՞ւ ավելի մեծ կրիաներ էլ չեն բերել: Տղաներից մեկը բարձրանում է կույտի գլուխն ու իջեցնում մի քանի բոլորովին թարմ, մսի ծվենները վրաները արյունոտ զրահներ: Նշանակում է, կրիաները վերջերս են հայտնվել այդտեղ և մի անհայտ քարայրաբնակ շարունակում է նրանցով սնվել: Թե դա ինչ էակ է՝ տղաները միանգամից չեն կարողանում գլխի ընկնել, բայց հասկանում են, որ թևավոր պետք է լինի:

Սկսում են որոնել անհայտ թռչունի հետքերը: Շատ են ման գալիս և վերջապես մեկը գլուխը բարձրացնում է ու հենց առաստաղի տակ տեսնում է արծվի բույնը: Բարձրանում են, տեսնում, որ մի քանի թարմ զրահ էլ այստեղ է թափված:

Գաղտնիքը պարզվում է: Այդ քարանձավում ապրող արծիվները, չգիտես ինչու, կրիաներին գերադասում էին մյուս որսատեսակներից: Բայց քանի որ մեծ կրիաներին օդ բարձրացնելը այնքան էլ հեշտ չէր, նրանք փոքրերին էին քարշ տալիս քարանձավ:

Ուրեմն այսպես, արծիվները կրիաներին բերում են իրենց բույնը, կեռ կտուցով մաս-մաս հանում զրահների միջից ու դատարկ զրահները թողնում բնի կողքին թափված: Հետո, երբ զրահները շատանում են, արծիվները ցած են գլորում ուղիղ իրենց բնի տակ: Նրանք առանձնապես աչքի չեն ընկնում մաքրասիրությամբ, բայց, երևում է, սովորություն ունեն ժամանակ առ ժամանակ կարգի բերելու բնի շրջակայքը: Ու այդպես տարիների ընթացքում զրահների մի հազվագյուտ հավաքածու է գոյացել քարանձավի մեջ:

Բայց ո՞վ է լսել, որ արծիվը դաշտի կրծողներին թողնի ու իր արծիվ լինելը մոռացած, ընկնի ճահիճները, թե ինչ է կրիա է բռնում: Տղաները դրա պատասխանն էլ գտան. վերջին տարիների ընթացքում թունաքիմիկատների օգտագործման շնորհիվ, մկներն ու մյուս կրծողները վերացել են: Դրանց հետ վերացան նաև արծիվները, որոնք սնվում էին հիմնականում կրծողներով: Դա հանրահայտ փաստ է: Իսկ ահա արծիվների մի ընտանիք գտնում է սովամահ չլինելու ելքը՝ ընկրնում է սնվել իրենց բնից ոչ այնքան հեռու տարածված ճահճուտներում վխտացող կրիաների մսով: Գուցե այնքան էլ համեղ չէ, բայց դե ժողովուրդն ասում է. «անճարն է կերել բանջարը»:

Կրիաների քարանձավի մասին «Ավանգարդ» թերթում տպագրված հոդվածը մեծ հետաքրքրություն առաջ բերեց: Բոլորը զարմանում էին, թե ինչպես են արծիվները լուծել այդ յուրահատուկ էկոլոգիական խնդիրը: Նույնիսկ բանը այնտեղ հասավ, որ գործարար մարդիկ եղան, որոնք առաջարկում էին այդ զրահները օգտագործել հուշանվերների արտադրության մեջ: Իսկ որ զրահների կույտը միջավայրի փոփոխության հետ կենդանիների վարքի փոփոխման մի զարմանալի ու ինքնատիպ ապացույց էր, նրանց չէր հետաքրքրում:

Մենք իհարկե մերժեցինք նրանց առաջարկը և զրահների կույտը մինչև օրս էլ շարունակում է աճել:

(շարունակելի)




ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ՀԱՆԴԻՊՈՒՄ ՄԱՇՏՈՑԻ ՀԵՏ

Ո՞վ կասի, թե ուր են տանում
Կածանները խոր անտառում,
Նայեք դուք այս հսկա վանքին,
Քանդակված է ժայռի կրծքին:
Ամեն կողմից՝ մոտ թե հեռու,
Գալիս են վանքն այդ տեսնելու:
Այսօր հերթն է այն դպրոցի,
Որի անունն է Մաշտոցի:
Երբ որ հասան վանքը հրաշք,
Մաշտոցն հառնեց նրանց առաջ.
— Այս ավերակ վանք ու բերդում,
Ապրում է մեր պատմությունը,
Հուշարձան է ամեն սյունը,
Խոյակ ու դուռ զարդաքանդակ,
Քարե գիրք է՝ պիտի կարդաք...—
Մանուկներն են ապշած նայում,
Մաշտո՞ցն է, ճիշտ, ժպտում դեմից,
Դանդաղ իջավ բարձր բեմից,
Երկար մորուք, հայացքն հեռուն,
Ձեռքը կրծքին, ոնց նկարում:
Գալիս է նա, կանգնում յոթին,
Մեկ-մեկ գրկում մանուկներին,
Գիրքը նրանց նախշանկար
Զգույշ թերթում, նայում երկար,
Կարդում է լուռ ու գոհ ժպտում,
Գոհ է, որ այս մանկանց սրտում
Ապրում է գիրն իր սիրասուն
Եվ ապրում է հայոց լեզուն:
— Զավակնե՛ր իմ լույս-լուսերես,
Քանի դուք կաք, անմահ եմ ես,
Դուք էլ հայոց այբուբեն եք,
Մենք միասին կանք, կլինենք:

# ԱՍՏՂ

Աստղերն իրենցից ներկայացնում են շիկացած գազի հսկայական գնդեր: Նրանց մեջ է կենտրոնացած Տիեզերքի ողջ նյութի գերակշռող մասը: Մեզ ամենից մոտ աստղը Արեգակն է, որի համեմատաբար ոչ մեծ հեռավորությունը թույլ է տալիս մանրամասն ուսումնասիրել այն: Մնացած աստղերը գտնվում են չափազանց հեռու, այդ պատճառով դիտվում են իբրև սկավառակ չունեցող լուսավոր կետեր: Եթե Արեգակի սկավառակի վրա կարելի է դիտել առանձին տիրույթներում տեղի ունեցող երևույթներ, ապա մյուս աստղերում նման երևույթների մասին կարելի է միայն ենթադրություններ անել:

Աստղերի առաջին և ամենակարևոր առանձնահատկությունն այն է, որ նրանք շարունակ արտադրում և միջաստղային տարածություն են առաքում ջերմային էներգիա: Այդ էներգիայի քանակը կախված է աստղը բնութագրող մի քանի մեծություններից: Նախ և առաջ դա նրանց ջերմաստիճանն է, որով նաև պայմանավորվում է աստղի գույնը: Աստղերի մակերևութային ջերմաստիճանները փոփոխվում են բավականին լայն միջակայքում՝ 2000—2 500 աստիճանից մինչև գրեթե 100 հազար աստիճան: Դրան համապատասխան աստղերի գույները փոխվում են կարմրից մինչև սպիտակ կամ նույնիսկ կապտասպիտակավուն: Թերևս գոյություն ունեն նաև մեծ թվով աստղեր, որոնց ջերմաստիճանը պակաս է երկու հազարից, սակայն նման ջերմաստիճանների դեպքում նրանց էներգիան հիմնականում առաքվում է աչքով անտեսանելի ինֆրակարմիր ճառագայթների ձևով, հետևապես մենք չենք տեսնում: Աստղագիտական գրականության մեջ լայնորեն օգտագործվում է աստղերի դասակարգումն ըստ ջերմաստիճանի, ըստ այդ դասակարգման, առավել ջերմ աստղերը համարվում են վաղ դասի, իսկ համեմատաբար ավելի «սառը» աստղերը՝ ուշ դասի:

Մյուս մեծությունը, որը կարևոր բնութագրիչ է համարվում աստղերի համար, դա նրանց շառավիղն է: Երկար ժամանակ որպես ամենափոքր շառավիղ ունեցող աստղեր հայտնի էին, այսպես կոչված, սպիտակ թզուկները, որոնց չափերը մոտավորապես մոլորակների չափերի են: Սակայն վերջին տասնամյակներում ստացված դիտողական փաստերը խոսում են նաև նեյտրոնային աստղերի գոյության մասին, որոնք պարզապես ապշեցնում են իրենց փոքր չափերով: Նրանց տրամագծերը կարող են հասնել նույնիսկ մինչև 10 կիլոմետրի: Իսկ ամենախոշորները աստղերի ընտանիքում կարմիր գերհսկաներն են, նրանց չափերը կարող են համեմատվել, ասենք, Երկրի ուղեծրի չափերի հետ, այսինքն հասնում են մի քանի հարյուր միլիոն կիլոմետրի:

Չնայած չափերի հսկայական տարբերություններին, աստղերի զանգվածները քիչ են փոփոխվում: Դրանցից ամենափոքրերը Արեգակի զանգվածից փոքր են մոտ հարյուր անգամ, զանգվածով ամենամեծերը՝ մոտավորապես այդքան անգամ «ծանր» են: Ինչպես ցույց են տալիս տեսական հաշվարկները, հարյուր արեգակնային զանգվածից ավելի մեծ զանգվածի աստղեր ընդհանրապես գոյություն ունենալ չեն կարող:

Աստղերի ուսումնասիրությունն առանձնահատուկ կարևորություն ունի Տիեզերքում նյութի զարգացման ու փոխակերպման օրինաչափությունները բացահայտելու գործում: Այդ իսկ պատճառով ժամանակակից աստղաֆիզիկան մեծ ուշադրություն է նվիրում նրանց համակողմանի հետազոտություններին, որոնց ընթացքում աստղերը նաև դասակարգվում են ըստ ամենատարբեր հատկանիշների: Որոշ աստղեր մտնում են խմբերի մեջ, մյուսները՝ ոչ, որոշ աստղեր ցուցաբերում են անկանոն բռնկման ակտիվություն, ուրիշները բաբախում են, նրանց մի մասն օժտված է հսկայական մագնիսական դաշտերով և այլն: Թե ինչպես են կապված իրար հետ այդ առանձին խմբերը և որն է նման հատկությունները ցուցաբերելու պատճառը, պարզում է աստղերի ֆիզիկան:

**ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

## ՈՒՍՈՒՑՉԻ ԱՄԲԻՈՆ

# Էությո՞ւն, թե՞ կեղև

Ուսուցչի անձնական կյանքը ուրախ ու հետաքրքիր է, երբ նա հարուստ տպավորություններով և մի քան արած մարդու բավականությամբ է տուն գնում:

Երկու տարի առաջ էր, 10-րդ դասարանի դասղեկ էի: Զուգահեռ Ա դասարանից միշտ մի տղա էր դասամիջոցներին իմ դասարանը մտնում և ինձ հանդիպելիս սիրալիր, բարեհամբույր բարևում: Մտածում էի՝ օրքան կիրթ ու դաստիարակված տղա է (արտաքինը, կեցվածքը, այդ էին վկայում):

Լավ եմ հիշում նաև նրա պահվածքը, խելացի պատասխանները՝ ավարտական քննությունների ժամանակ:



Ավարտեց...

Իսկ ահա երկու տարի հետո դպրոցի միջանցքում հանդիպում եմ նույն տղային՝ Արթուրին՝ ավելի առնականացած: Նա վիճում էր և ոտքերով հարվածում մի 9-րդ դասարանցու, որը կոպիտ էր վերաբերվել նրա բարեկամի հետ: Երբ միջամտեցի, նա իր կողմ պարզած ձեռքս արհամարհական հրեց, «Արա, դե գնա» արտահայտությամբ բռնեց դուրս տանող ճանապարհը:

Մի պահ քարացա: Մի՞թե այս այն տղան չէր՝ բարեհամբույր, կիրթ, քաղաքավարի: Ու ինքս ինձ հարց տվի՝ ուրեմն նրա բոլոր բարևներն ու արարքները ցուցադրական էին, արտաքին կեղև, հեղինակություն և վերաբերմունք շահելու համար, ոչ թե ներքին էություն:

Ալեկոծվեց հոգիս այն մտավախությամբ, թե հանկարծ մյուսներն էլ սրա նման չլինե՞ն:

Աշնան թխպոտ օրերից մեկն էր: Լենինի պողոտայի մարդաշատ մի կանգառում ավտոբուսի էի սպասում:

Կանգառին մոտեցավ մի երիտասարդ, որի գրկին նիհարիկ, թիթեռի թեթևությամբ մի երեխա էր քնած: Երիտասարդն անփույթ էր հագնված, և թևից կախված էր երեխայի շորերի պարկը: Ամեն ինչից երևում էր, որ տեղացի չէր: Թափառ հայացքը, պահվածքը, շփոթված-լարված շարժումները գրավեցին նստարանին նստած 12-ամյա դպրոցականի ուշադրությունը: Տղան անմիջապես տեղը զիջեց եկվորին և հետաքրքրությամբ ուսումնասիրում էր նրան ու երեխային:

Տղան ջերմ, մտերմիկ զրույց սկսեց նրա հետ: Ես սկզբում հայերեն հարցրեց, թե ուր է գնում, որ համարի ավտոբուսին է սպասում: Երիտասարդը չհասկացավ հարցը և ռուսերեն ասաց, թե չի հասկանում: Այն ժամանակ տղան նույնպիսի ջերմությամբ ու վարժ ռուսերենով կրկնեց հարցը.

— Որտեղացի՞ եք:

— Հեռավոր Կարպատներից:

— Այս փոքրիկն է՞լ այնտեղից է:

— Այո... մայրը հիվանդ է, մնաց հյուրանոցում: Որոշեցի երեխայի հետ շրջել Երևանի փողոցներով: Ձեր քաղաքը գեղեցիկ է:

Տղան մեծի թափանցող հայացքով նայեց գրպանաշրջիկ կարպատցուն և մոտն եղած քաղցրավենիներից երկուսը մեկնեց նրան:

Երիտասարդը շփոթվեց, հրաժարվեց վերցնել: Իսկ փոքրիկը... Փոքրիկը, նայելով տղային և նրա մեջ հարազատ ու մտերիմ մարդու վերաբերմունք տեսնելով, սկսեց հորից պահանջել, որ վերցնի:

Մարդը շնորհակալությամբ ընդունեց քիթքները և հարցրեց, թե ո՞ւր է գնում և անունն ի՞նչ է:

— Երրորդ մասում եմ ապրում, չորրորդ դասարանցի եմ:

Նրա անունը ես չլսեցի կանգառին մոտեցող ավտոբուսի հռնդյունի պատճառով: Նա ավտոբուս բարձրացավ և պատուհանից ձեռքը ժպտալով թափահարեց:

Իսկ ես՝ լուռ ունկնդիրս, հազիվ էի հուզմունքս զսպում ու մտքումս այդ տղային ասում էի.

«Շնորհակալ եմ, որ այդպիսին ես»:

ՎԻԿՏՈՐՅԱ ՍԱՐԳՍՅԱՆ

*Երևանի № 80 դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի*

*Երևանի Վ. Վաղարշյանի անվան դպրոցի 8-րդ Ա դասարանի աշակերտների շարադրություններից։ Կարդացեք, խորհեք, արձագանքեք։*

●

Ես չգիտեմ, թե ուրիշների նախանձի զգացումն ինչպիսին է։ Գուցե իմ նախանձը շատ բանով է տարբերվում նրանցից, գուցե իմ այդ զգացմունքը բոլորովին էլ նախանձ չէ։ Չգիտեմ։ Կյանքում շատ եմ նախանձել։ Եթե ուզում եք իմանալ, գրեթե յուրաքանչյուր մարդու, որին հանդիպում եմ, նախանձում եմ։ Սակայն իմ նախանձը չի խանգարում ուրիշներին։ Նախանձում եմ մեկին, հետո մոռանում եմ, քանի որ արդեն սկսած եմ լինում նախանձել մեկ ուրիշի։ Երբեք էլ չեմ փոշմանել նախանձելուս համար, քանի որ այն ոչ մեկին չի խանգարում, իսկ ինձ՝ ընդհակառակը օգնում է, որ ավելի լավ նկատեմ իմ անձնական թերությունները ու արժանիքները։

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ




●

Երկու տարի ես դրուժինայի խորհրդի նախագահ էի։ Այնուհետև ընտրեցին մեկ ուրիշի։ Նրա ընտրվելուց մեկ ամիս առաջ մեր դպրոցից պետք է ընտրեին համամիութենական հավաքի պատգամավոր։ Ուզում էին կամ ինձ ընտրել, կամ նրան։ Ուշ իմացա, որ նրան են ընտրել և ուղարկել Մոսկվա։ Երբ իմացա, ինձ կորցրած, չգիտեի ինչ անեմ։ Բայց իմ նախանձը բարի էր, որովհետև ես նախանձելով ցանկանում էի նրա նման լինել։

●

Երբ մեկը կարողանում է հասնել մի լավ բանի, իսկ մյուսը՝ ոչ, այդ ժամանակ ի հայտ է գալիս նախանձը։ Բայց նախանձողը մեղավոր չէ, որ լավին չի կարողացել հասնել։ Նրան ուղղակի բնության կողմից տրված չի եղել այն, ինչ պահանջվում է դառնալ ավելին, քան կա։ Բայց երբ նա կարողանում է իր միջից վերացնել նախանձը, այդ էլ է ուժ տրված բնության կողմից։

Բնությունը կարող է մեկին շատ տալ, մյուսին քիչ։ Շատ ունեցողը քիչ ունեցողի առաջ մեղավոր չի, ոչ էլ քիչ ունեցողն է մեղավոր։ Ուրեմն շատ ունեցողը պետք չէ, որ մեծամտանա, քիչ ունեցողն էլ նախանձի նրան։

●

«Դինամո» Կիև, «Սպարտակ», «Դինամո» Մինսկ ֆուտբոլային թիմերը իրենց ջանքերով զբաղեցրեցին առաջին, երկրորդ և երրորդ տեղերը։ Ես նախանձով մտածում եմ, թե ինչու Երևանի «Արարատը» չզբաղեցրեց այդ երբեք կարևորագույն տեղերից մեկը և չմասնակցեց Ուեֆայի գավաթի խաղերին։ Սակայն հույս ունեմ, որ մյուս խաղաշրջանում «Արարատը» ձեռք կբերի մեծ հաջողություններ։

●

Շատ անգամ նախանձել եմ իմ լավ սովորող ընկերներին։ Ինչպե՞ս է լինում, որ նրանք ամեն ինչ հասցնում են, իսկ՝ ես ոչ։ Նախանձեցի նաև մեր հարևանի աղջկան, երբ նա ընդունվեց մանկավարժական ինստիտուտ։ Ինքս էլ կուզենայի ընդունվել, բայց վստահ չեմ իմ ուժերին։ Եթե ինձ չհաջողվի, կաշխատեմ ընդունվել քիմիական տեխնիկում։ Ընդհանրապես իմ մեջ բարի նախանձ կա։ Ես չգիտեմ էլ, թե ինչ ասել է՝ չար նախանձ։

# ՍԵՐԳԵՅ
# ՐԱԶՑՈՎ

Անցյալ տարի Երևանում անցկացվեց անդրկովկասյան հանրապետությունների տիկնիկային թատրոնների անդրանիկ փառատոնը, ուր Միության և արտասահմանյան բազմաթիվ պատվավոր հյուրերի թվում հրավիրված էր նաև ՍՍՀՄ ժողովրդական արտիստ, սոցիալիստական աշխատանքի հերոս, տիկնիկային թատրոնների միջազգային միության պրեզիդենտ Սերգեյ Օբրազցովը:

Նա իր հրաշագործ տիկնիկների հետ շրջել է ոչ միայն մեր Միությունում, այլև այցելել է աշխարհի 38 երկրներ, մոտ 300 քաղաքներում տվել 20 հազարից ավելի ներկայացում: Այսօր «Պիոների» հյուրն է ճանաչված արվեստագետը: Լսենք նրան:

**Հինգ տարեկան էի, երբ մայրս ինձ նվիրեց գունավոր մի տիկնիկ:** Հիմա չեմ հիշում, երևի այդ պահին էլ սիրեցի, կապվեցի տիկնիկների հետ, ինչպես սովորաբար ընդունված է ասել՝ հասկացանք միմյանց լեզուն: Եվ ահա, այդ օրից անցել է շուրջ կես դար: Հիմա էլ, չնայած արդեն յոթանասունս անց է, դարձյալ չեմ պատկերացնում իմ կյանքն առանց տիկնիկների, առանց նրանց հետ տարվող մշտական, ամենօրյա ստեղծագործական աշխատանքի: Իմ կարծիքով, եթե մարդը պառկում է հանգստանալու և այդ պահին երազում է, ուրեմն, նա երիտասարդ է: Իսկ եթե տարվում է հիշողություններով, անշուշտ, ծեր է: Այդ պահին թե քանի տարեկան է նա, բոլորովին էլ կարևոր չէ: Ջահելությունը՝ «կլինի», «կարող եմ», «պետք է լինի» բառերի մեջ է թաքնված:

1923 թվականից ընկերացա տիկնիկներին, իսկ 1931 թվականից ղեկավարում եմ իմ նախաձեռնությամբ կազմակերպված գեղագիտական դաստիարակության կենտրոնական տանը կից Մոսկվայի տիկնիկային պետական թատրոնը: Ես կարծում եմ, տիկնիկային թատրոնի արտիստը պետք է կարողանա հանդիսատեսի մեջ ուրախության ու տխրության զգացումներ արթնացնել, անկեղծ ու վարակիչ ծիծաղ պարգևել նրան, ձեռքից բռնած իր հետ տանել հրաշքների իսկական մի թագավորություն, որտեղ ձմեռային այգի կա, որտեղ ճռվողում են սոխակներն ու կռընչում թութակները, որտեղ ակվարիում կա՝ լեցուն ձկներով և... իսկական կոկորդիլոսներով: Այդ աշխարհի իսկական տերերը... տիկնիկներն են: Իմ թատրոնի ծրագիրը բազմազան է: Թատրոնը ներկայացումներ է տալիս թե՛ ամենափոքրիկների, թե՛ դպրոցականների ու պատանիների և թե՛ մեծահասակների համար: Հանդիսատեսը ինչ տարիքի էլ լինի, միևնույն է, եթե նա չսիրեց մայր բնությունը, ապա տիկնիկային արվեստը երբեք չի կարող սիրել ու գնահատել: Չէ՞ որ բնությունն ինքնին հրաշալիքների իսկական թագավորություն է: Իսկ տիկնիկային արվեստի կարևորագույն առանձնահատկությունը կայանում է հենց նրանում, որ հրաշքների այդ իսկական թագավորությունը տեղափոխում է թատրոն: Ուրեմն խորհուրդ կտայի երեխաներին նախ և առաջ սիրել մայր բնությունը, նրա սովորական թվացող հրաշալիքները, սիրել մարդկանց, հայրենիքը, այն ամենը, ինչ շրջապատում է մեզ, արեգակի պես անվերջ լուսավորում մեր չծերացող աշխարհը:

Որդիներս ու թոռներս իրենց ընտանիքներով հաճախ են այցելում թատրոն, դիտում նոր ներկայացումները, իսկ երեկոյան մեր տանը հավաքված քննարկում տեսածը: Ինչ խոսք, օգտակար ու խելացի խորհուրդներով նրանք հաճախ են օգնում ինձ: Ինչ վերաբերում է այն հարցին, թե ո՞ւմ եմ ժառանգել իմ արվեստը, պետք է ասեմ՝ ոչ մեկին, գուցե իմ ծոռնուհի Աննան կարողանա դառնալ իմ գործի արժանի շարունակողը, չգիտեմ, առայժմ չեմ կարող ասել, չէ՞ որ նա ընդամենը... մեկ տարեկան է:

Իսկ «Պիոների» ընթերցողներին ցանկանում եմ միմիայն... երջանկություն:

Գրի առավ ՍԱՐՈ ԳՅՈԴԱԿՅԱՆԸ

# ԵՐԱԶ

Դռան ուժգին բախոցը վախեցրեց թե՛ Սոսին, թե՛ մորը:

Մայրը մթան մեջ խարխափելով գտավ, հագավ խալաթը, մոտեցավ դռանն ու կանգնեց.

— Ո՞վ է,— գիտեր, բայց հարցրեց:

— Հոգեառդ: Բա՛ց:

Հայրն է: Դարձյալ ամեն օրվա պես խմած, շորերը փոշոտ, մազերը տրորված խոտերի պես ասես ուր որ է չորանալու էին գլխի վրա, դեմքը մազակալված: Այսպիսին է նա, երբ մի քանի օր անընդմեջ խմում է ու ուշ տուն գալիս: Մայրն ամեն օր արբում ու հարդարում է նրա շորերը:

Հայրը օրորվելով կանգնեց շեմին, շորորալով մոտեցավ սեղանին, ոտքով մի կողմ հրեց մթան մեջ անսպասելիորեն ծնկներին դեմ առած աթոռը, շոշափելով գտավ մահճակալը: Նստեց: Փնչաց: Հառաչեց: Անտրամադիր էր: Երկարաձիգ հորանջեց:

Հետո չգիտես ի՞նչ պատճառով տեղնուտեղը զայրացավ ու խռպոտ ձայնով գոռաց.

— Աղջի Ծողե՛ր: Անաստվա՛ծ աղջիկ, մի լույսը վառի՛ր, տես եկողր մա՞րդդ է, թե՞ շուն: Կարող է մարդդ չեմ:

Մայրը սուսուփուս վառեց լույսը, անփութորեն մի կողմ նետեց հագից հանած խալաթը ու պառկեց:

Հայրը բարձրացրեց ծանրացած գլուխն ու չորացող լեզվով շոշափեց իրար կառչող, ասես սոսնձոտ շուրթերը. շուրթերն արդեն ճաքվում էին: «Երևի խմիչքը շատ օգտագործելուց է, որ նրա շուրթերը միշտ ճաք են տալիս»,— մտածեց Սոսը:

— Սո՛ս, Սո՛ս ջան, դու ինչո՞ւ չես քրնում: Քնի՛ր, տղա, քնի՛ր, քնիի՛ր: Ես, — նա որոշ ժամանակ լռեց, ասես մտածելով ու ծանրութեթև անելով՝ կարիք կա՞ խոսելու,— ես շատ դժվար մարդ եմ, շատ դաժան ու անհասկացող մարդ եմ, չէ՞, ճիշտ չե՞մ ասում,— նա ճիգով ելավ տեղից, մոտեցավ ու նստեց Սոսի մահճակալին: Շոշափելով գտավ վերմակի ծայրը (լույսը ինքն էր մարել, իհարկե, ափսոսաց, որ լույսը մարել է, իսկ ոտքերը նվվում էին, հարց էր, կտանե՞ն մինչև անջատիչը), մի կողմ ծալեց.— Սո՞ս: Քնեցի՞ր: Բան էի խոսում: Է՜, փչացել եք, բոլորդ էլ փուչ եք դարձել: Պողոսն ասում է. «Դու լավ մարդ



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

ես, Բաբկեն, ազիզ մարդ ես», փորացավը գիտեմ՝ շիլ աչքը Թամարենց Չըլիրի մոտի մեր բոստանի վրա է: Խեյքի պուտուկ չէ՞, իմ Սոս մինուճարը մեծանա ու բոստան չունենա, կոլխոզից ուզի, մուննաթի տակ մտնի՞: Վա՜յ, Պողո՜ս, Պողո՜ս, փափախդ շան մազից է, Պողո՛ս ջան: Մարդագե՜լ... Սո՞ս: Սո՛ս ջան,— չշարունակեց:

Նրա գլուխը ձախ ուսի վրայով ծռվեց, թվաց ուր որ է գլորվելու է հատակին: Փքված երակներով ձեռքերը ծանրացան ծնկների վրա, հետո իրենք իրենց սահելով ներքև կախվեցին կողքերից, մատները հպվեցին հատակի տախտակներին ու մնացին:

Սոսը վերմակը հեռացրեց աչքերից, նայեց հոր երկտակված մարմնին, մթան մեջ հայրը անգլուխ ուրվականի էր նման:

— Պա՛, ա՞յ պա,— Սոսը համարյա ճչաց:

Հայրը գլուխը բարձրացրեց: Ներս փախած աչքերով նայեց տղային ու կարծես սթափվեց: Աչքերը վերադարձան իրենց տեղերը, գլուխը ընդունեց բնական դիրք...

— Սո՞ս, էէէ... Քո Վարշամ պապն ասաց. «Բաբկեն, աղջկաս կնիկ առար, հետո գլուխ փախցնելը զոռ կլինի, տես հա՜»:

Բաբկենը թևերը թափահարելով հորանջեց, ոտքի կանգնեց, օրորվեց, մոտեցավ անկողնուն, հանվելով սահեց վերմակի տակ:

Սոսը փակեց աչքերը:

...Մեկ ոչխար, երկու ոչխար... Լալա, Կարեն, հեծանիվ, ֆուտբոլ, խմած՝ ամեն օր խմած... Լալա... ...մեկ ոչխար, երկու ոչխար... երեք ոչխար... տասը... ոչխար, տասնմեկ... մինչև հարյուր հաշվիր: Մինչև հարյուր հատ ոչխար հաշվես, չես կարող հաշվել՝ կքնես, քունն անուշ է... ուշ է... շշշը...

Վերջապես քնեց... Քնե՞ց... Գազօջախի վրա աման կար: Գոլորշին ճնշում էր ու կափարիչը ոչ մի կերպ չէր կարողանում հանգիստ նստել տեղում: Մայրը շուտ-շուտ է կաղամբապուր եփում: Իր ամենասիրած ճաշը: Ճիշտ է՝ հոր ճաշակն ավելի կարևոր է, հայրն ավելի կամ ամենակարևորն է, բայց նա ե՞րբ է տանը ճաշում: Մայրը երևի հիմա գոմում է: Ոչխարը եկած կլինի, ոչխար է կթում: Գնա՞: Ձեռքերի դաստակներում ցավը աշխուժանում էր:

— Եկա՞ր, Սո՛ս ջան:

Մայրը նստել էր ցածրիկ աթոռի վրա, շորով ծածկել էր ծնկները ու կթում էր: Ոչխարը չար էր կամ իր գառան բաժին կաթը չէր ուզում զիջել:

— Սրա գլուխը բռնի՛, հոգիս հանեց: Ճաշին նայեցի՞ր,— գլուխը բարձրացրեց մայրը:

— Նայեցի:

— Հո չէ՞ր թափվել:

— Թափվելու վրա էր:

— Չո՜ռ, անտե՛ր, ոտքս տրորեց, գլխի՛ց բռնի, կատաղածը հիմա կաթը կթափի:

— Վերջի՞նն է,— հարցրեց Սոսը:

— Մեկն էլ կա, Մոսիկն է: Հանգիստ է, բռնելու կարիք չի լինի: Վախենո՞ւմ ես, պի՛նդ բռնիր:

— Ձեռքերս ցավում են,— ասաց Սոսը:

— Ինչո՞ւ: Ի՞նչ է եղել: Ընկե՞լ ես,— անհանգստացավ մայրը,— առավոտից վազվըռտուկի մեջ ես: Շա՞տ է ցավում:

— Եսիմ, ցավում է, էլի: Կարենի հեծանիվն էի փորձում, ընկա:

— Դու էլ ունես...

— Ես ի՞նչ ունեմ, մա՛:— Ցավը կարծես շատ պարելուց հոգնած նստեց հանգստանալու,— ես ի՞նչ ունեմ, մա՛:

— Հեծանիվ,— քթի տակ ժպտաց մայրը,— չե՞ս տեսել:

— Չեմ հավատում, ինձ համար հեծանիվ առնողն ո՞վ է:

— Ինչո՞ւ, աստծուն փառք, անտեր չես, հայրդ Արշակի հետ է գնացել առել:

— Ծիծաղում ես վրաս, բա ինչո՞ւ Արշակ քեռին ինձ բան չասաց,— Սոսը շատ էր ուզում հավատալ մորը, բայց հավատալը չէր գալիս,— ով խաբի՜...

— Ամոթ իրեն: Որ ասում են, հավատա: Ինձ չե՞ս հավատում: Հեծանիվդ մառանի դռանը հենված քեզ է սպասում:

Սոսը գոմի թաց գետնի վրա սայթաքելով դուրս թռավ:

Հանգստանալուց հետո ձեռքերի մեջ եղած ցավը նորից էր սկսել իր խենթացնող պարը, բայց ի՞նչ ցավի ժամանակ էր:

Մառանի դռանը հենված պսպղում էր երկանիվ հեծանիվը:

Սոսը գիտեր, որ երբեմն հրաշքներ լինում են, բայց այդպիսի հրաշքի չէր սպասում:

Թիկունքում քայլերի ձայն լսվեց: Մեկի ձեռքը իջավ գլխին, շոյեց, զգալի էր ձեռքի մեծությունն ու ափի կոշտուկները: Հոր տեսքը բոլորովին էլ սովորական չէր՝ կոկիկ, սափրված, մաքուր հագացքով հայրը ժպտում էր: Հայրը այնպես լավ ու այնքան լայն էր ժպտում, որ կարծես ժպիտը հոսում էր բեղերից, կուտակվում բերանի անկյուններում ու ծածկում շրթերը, տա-

րածվում դեմքի վրա: Հայրը չէ՞ր ժպտացել, թե՞ մինչ այդ ինքը չէր նկատում, ա՞յ քեզ ժպտալ:

Հայրն էր. գիշերները օրորվելով, գոռգոռալով տուն եկող հորը նման չէր:

— Գիշերը երազ տեսե՞լ ես,— հարցրեց նա:

— Հնը, տեսել եմ,— գլխով արեց տղան:

— Հեծանի՞վ:

— Հեծանիվ,— Սոսը ափով շոյեց հեծանիվի զանգը, ծլնգացրեց, թփթփացրեց զսպանակավոր թամբը: Համարձակ նայեց հոր աչքերին ու շարունակեց.— Պա՛, հիշտն ասած, երբ դու խմած ես՝ իմ կարդացած գրքի անգլուխ ուրվականին ես նման:

— Ես էլ չեմ խմում,— տղայի ասածներից և՛ խոցված, և՛ զգացված, ասաց հայրը:

— Ով խաբի՛,— կասկածեց Սոսը:

— Մորդ հարցրու:

— Ինքն ի՞նչ իմանա: Երդվի՛ր,— հոր ձեռքը բռնեց Սոսը:

Հանդարտված ցավը նորից սկսեց վրնգվրնգալ: Սոսի դեմքը ձգվեց:

— Ի՞նչ եղավ,— անհանգստացավ հայրը:

— Երդվի՛ր,— ասաց Սոսը:

Հայրը տղայի գլուխը սեղմեց կրծքին: Ժպիտը բացվեց. մանուշակի պես տաք ու կապույտ ժպիտը բյուր աչքերով ժպտաց: Այ թե ի՛նչ է նշանակում հասկանալ տղայի հոգսը: Այ թե ի՛նչ է նշանակում հասկանալ իրար: Իրար հասկանալ նշանակում է իրար գտնել:

Ասես քարերի ճեղքերից ու կողքերից մանուշակների պես ժպիտներ բացվեցին: Հայրն զգաց, որ իր դեմքը կորել է ժպիտի մեջ, ժպտաթաթախ դեմքով զգաց, որ շահել է մեծ բան, որը գին չունի:



Սոսը պառկած տեղը հաճելի թմրություն էր զգում: Ոտքերը դեռ շարժվում էին ու պտտեցնում հեծանիվի ոտնակները:

Հաշվիր, մինչև քանի՞սն ես հաշվում:

Թեկուզ միլիոն ոչխար հաշվիր... Երկու միլիոն ոչխար...

Իսկ եթե հաշվես՝ մեկ հեծանիվ, երկու հեծանիվ, այնքան հեծանիվ, որքան որ ցերեկը պտտվել են անիվները:

Զանգակներով ու անվավոր կովեր, ոչխարներ:



Հայաստանի պատմության պետական թանգարանը Սովետական Միությունում ամենամեծերից մեկն է: Գտնվում է Երևանի Լենինի հրապարակի վրա: Թանգարանում պահվում և ցուցադրվում են հնագիտական, ազգագրական, պատմագիտական ցուցանմուշների խոշոր հավաքածուներ, որոնք ունեն գիտական բացառիկ նշանակություն: Դրանց հիման վրա ուսումնասիրվում են Հայաստանի տարածքում հնագույն ժամանակներից բնակվող մարդկանց պատմությունը, մշակույթը, տնտեսական, քաղաքական ու հասարակական կարգերը: Եթե որևէ մեկին հետաքրքրի, թե Հայաստանում ինչպես են ապրել մարդիկ մեզանից հազարավոր տարիներ առաջ, ինչ գործիքներ ու զենքեր են օգտագործել, կրոնական ինչպիսի պատկերացումներ են ունեցել, ինչ արդուզարդ են կրել, ինչով են կահավորել բնակարանները, ինչպիսի նշագրերով են գրել, ինչ դրամներով են առևտուր կատարել կամ ինչպիսի արվեստ են ունեցել, ուրիշ էլ որտե՞ղ կարող է իմանալ, եթե ոչ՝ Հայաստանի պատմության պետական թանգարանում:

Յուրաքանչյուր ցուցասրահ պատմում է պատմական մի ամփոփ ժամանակաշրջանի մասին: Մի շարք սրահներում էլ ցուցադրվում են Հայաստանի առանձին շրջանների, գավառների, քաղաքների ու այլ բնակավայրերի բնակչության առանձնահատուկ հագուստը, տնային գործածության ու արդուզարդի առարկաներ, ժողովրդական արվեստի լավագույն ըստեղծագործությունները, որոնց մեջ հատկապես առանձնանում են արծաթե բազմատեսակ ու բարձրարվեստ գոտիներն ու այլ զարդեր, գորգերն ու կարպետները և էլի շատ ու շատ առարկաներ: Այդ իրերի մի մասը, որ դարեր շարունակ թաքցրել է հողը, հնագետները պեղել են Հայաստանի տարբեր հնավայրերից, մի մասն էլ ազգագրագետները հավաքել են ժողովրդից, մեծ թիվ են կազմում նաև այն ցուցանմուշները, որ թանգարանին նվիրել են Հայաստանում, Սովետական Միության այլ վայրերում և արտասահմանում բնակվող մեր հայրենակիցները:

Թանգարանի հնագույն նմուշները պատկանում են քարի դարին: Դրանք կարծր քարատեսակներից՝ վանակատից ու օբսիդիանից պատրաստված գործիքներ են, որ նախամարդիկ օգտագործել



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆ

են կտրելու, ծակելու, հարվածելու համար: Դրանց կողքին կարելի է տեսնել երկրագործական առաջին գործիքները՝ քարե բրիչներ, մանգաղներ, սանդեր, աղորիքներ և այլն: Այս ցուցասրահում դուք կըծանոթանաք բրոնզի ու երկաթի դարերի մարդկանց կենցաղին ու մշակույթին: Բազմազան ու բարձրարվեստ արձանիկները, ագաթից և սարդիոնից գեղեցիկ ուլունքները, բրոնզե ու երկաթե ապարանջանները, գործիքներն ու զենքերը, նուրբ խեցանոթները, կամարաձև ծածկով փայտե սայլերն ու կառքերը պեղված են Ծենգավիթից, Լճաշենից, Գառնիից, Կարմիր բլուրից ու այլ հնավայրերից: Չափազանց հետաքրքիր են Հայաստանի հին և միջնադարյան հուշարձաններից հայտնաբերված նյութերը: Դրամների հնագույն հավաքածուի մեջ կարևոր տեղ են գրավում Տիգրան Մեծի, Արտավազդ 2-րդի, Կիլիկիայի Լևոն 2-րդի, Հեթում 1-ինի և հայոց այլ թագավորների ու իշխանների պատկերներով ոսկե, արծաթե ու պղնձե դրամները: Անիից, Դվինից ու Հայաստանի միջնադարյան այլ քաղաքներից բազմաթիվ ցուցանմուշներ կան թանգարանում: Դրանցից շատերը պատմում են երբեմնի հռչակավոր մայրաքաղաքների բարձր արվեստի, զարգացած արհեստների, հարուստ մշակույթի ու կենցաղի մասին: Արվեստի հազվագյուտ նմուշներ են ոսկերչական իրերը, հախճապակե ու ջնարակած խեցեղենը, եկեղեցական ըսպասքը: Իսկ ազգագրական հավաքածուները, որոնց մեջ կան 17—20-րդ դարերի մեծ քանակությամբ իրեր, իրենց նրբությամբ ու գեղեցկությամբ հարուցում են այցելուների զարմանքը: Տարատեսակ գորգերը, կարպետները, խուրջինները, անկողնակալները իմաստավորված են խորհրդանշական զարդապատկերներով, իսկ արծաթե ու ոսկե գոտիների, գլխազարդերի, մանյակների, ապարանջանների ու այլ զարդերի մեծ մասը, որոնք բացառապես հայ զարդագործների ստեղծագործություններն են, առանձնանում են ազգային ինքնատիպ ոճով ու գրավչությամբ:

Հայաստանի պատմության թանգարանը, որտեղ այժմ ընդհանուր առմամբ պահվում է մոտ 250 հազար նմուշ, հիմնադրվել է 1920 թվականին: Նրա առաջին վարիչներից են եղել Մարտիրոս Սարյանը և նշանավոր ազգագրագետ-հընագետ Երվանդ Լալայանը: Այդ թանգարանի հիման վրա էլ հետագայում ստեղծվել են հեղափոխության, կերպարվեստի ու գրականության թանգարանները, որոնք հետագայում առանձնացել են: Այժմ թանգարանում գործում են հնագիտական, ազգագրական, գիտամասսայական և այլ բաժիններ, որոնք նյութերը պահպանելուց, վերականգնելուց և դասակարգելուց զատ, զբաղվում են նաև գիտական աշխատանքով

ՎԱՌԼԵՆ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# ԱՐՏ



ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Թոթափելով Սելևկյանների լուծը, Արտաշես Առաջինը մ. թ. ա. 189-ին իրեն հռչակեց Մեծ Հայքի թագավոր: Նրա առաջին գործերից եղավ նոր մայրաքաղաքի հիմնադրումը, որը կոչեց իր անունով՝ Արտաշատ: Ըստ երևույթին այդ տեղի ունեցավ 189-ին, քանզի մի քանի օտար պատմիչների վկայությամբ, քաղաքի կառուցման վայրը ընտրել է հին աշխարհի խոշորագույն ռազմական և քաղաքական գործիչներից մեկը՝ կարթագենցի Հաննիբալը: Նա Արտաշեսի մոտ կարող էր ապաստանած լինել հռոմեացիներից մ. թ. ա. 189-ին: Ըստ Պլուտարքոսի, Հաննիբալը բազմաթիվ խորհուրդներով օգտակար է եղել Արտաշեսին, նկատելով «չօգտագործված ու անտեսված հարմարագույն ու խիստ հաճելի մի վայր, նա տեղում ուրվագծեց քաղաքի հատակագիծը»: Տեղանքն, հիրավի, հոյակապ էր ընտրված. Արարատի վեհափառ տեսիլքին ակընդետ բլուրները, որ անցյալում լքված բնակավայր էին, երկրի մայրաքաղաք լինելու ամենագեղատեսիլ վայրն էր: Հետագայում այդ բլուրներից մեկի վրա կառուցվեց Խոր Վիրապի վանքը: «Հայկական Կարթագենը»՝ ինչպես Արտաշատն անվանեցին ժամանակակիցները, միասնական հատակագիծ է ունեցել և եղել է ժամանակի խոշորագույն ու գեղեցկագույն քաղաքներից մեկը: Արտաշեսը այնտեղ է տեղափոխում Երվանդաշատի բնակչության մի մասը, ինչպես նաև բազմաթիվ գերի արհեստավորների ու առևտրականների, շինարարների ու քարագործ վարպետների: Նա քաղաքը շրջափակում է երկարաձիգ ու մեծածավալ պարիսպներով: Շուտով Արտաշատն այնպես է տարածվում, որ դաշտավայրով մեկ փռվում են նրա արվարձանները ու քաղաքի մեծահարուստների այգիները, կառուցվում են բազմաթիվ պալատներ ու տաճարներ, և իհարկե, քաղաքի պահապան աստծուն՝ Անահիտին նվիրված մեհյան:

Երբ գահին բազմեց Տիգրան Մեծը (մ. թ. ա. 95), Հայաստանը

# ԱՇԱՏ



դարձավ աշխարհակալ պետություն, որի սահմանները ձգվում էին Կասպից ծովից մինչև Միջերկրականի ափերը, հասնելով Հրեաստան: Արտաշատը մնացել էր պետության հյուսիսում: Թագավորության կենտրոնական մասերում նոր մայրաքաղաք ունենալու պահանջ էր առաջացել: Եվ Տիգրանը մ. թ. ա. 80-ական թվականների վերջին հիմնադրեց Տիգրանակերտը: Տիգրանը դրամատուն ուներ և՛ Տիգրանակերտում, և՛ Արտաշատում: Նրա օրոք ավելի բազմամարդ ու ծաղկուն է դառնում Արտաշատը:

Արտաշատը բուռն զարգացում է ապրում նաև Տիգրանի որդու՝ Արտավազդի օրոք: Ըստ երևույթին, հենց նրա ժամանակ է կառուցվել Արտաշատի ամֆիթատրոնը: Արժե, որ այս մասին ավելի մանրամասն խոսվի:

Հռոմին դիմագրավելու նպատակով Արտավազդը դաշնակցում է պարթևների հետ և իր քրոջը կնության տալիս պարթևների թագաժառանգ Բակուրին: Այդ առիթով տոնահանդեսներ և խնջույքներ են կազմակերպվում: Մեկ օր պարթև Օրոդես արքան և Արտավազդը դիտելիս են լինում Յասոն ողբերգակի և նրա խմբի ներկայացրած Եվրիպիդեսի «Բաքոսուհիները», ներս է մտնում Սիլլակ սատրապը և բեմ նետում հայերի և պարթևների ոխերիմ թշնամի, հռոմեացի զորավար Մարկոս Կրասսոսի գլուխը: Պլուտարքոսը նկարագրելով այդ պահը, ասում է նաև, որ Արտավազդն ինքն էլ ողբերգություններ, ճառեր և պատմություններ էր գրում: Դրանցից մի քանիսը պահպանված են եղել նաև Արտավազդից շուրջ երկու դար հետո՝ Պլուտարքոսի ժամանակ: Այս փաստը, անշուշտ, վկայում է Արտավազդ արքայի ստեղծագործությունների գեղարվեստական արժանիքների մասին:

Երկար դարերի ընթացքում Արտաշատը երկրի ոչ միայն քաղաքական, այլև առևտրական ու արհեստագործական կենտրոնն էր: Գտնվելով միջազգային առևտրական ուղիների վրա, քաղաքը ապրանքներ էր ներմուծում հեռավոր Հնդկաստանից ու Ցեյլոնից, Միջերկրականի ափամերձ երկրներից, ինքն էլ արտահանելով իր բազմահմուտ արհեստավորների ձեռակերտները: Արտաշատով էր անցնում նաև հռչակավոր «Մետաքսե ուղին», որով Հնդկաստանից, Չինաստանից ու Արևելքի այլ երկրներից առևտրականները երկար ճանապարհ կտրելով բերում էին բրինձ ու համեմունքներ, թանկագին քարեր ու գոհարեղեն, փղոսկր ու սև փայտ, բամբակ ու պերճանքի իրեր, իսկ Արտաշատից էլ այլ երկրներ էին արտահանվում հացահատիկ ու գինի, կապար, պղինձ, անագ, ոսկեթել ու ոսկեկար շորեր, ոսկյա ու արծաթյա սպասք ու գեղարվեստական իրեր, բուրդ, կաշի, ձիեր ու ջորիներ: Պլինիուսը ի թիվս Հայաստանից արտահանվող այլ իրերի ու բույսերի, հիշատակում է աղամանտիս բույսը, որին արյունծը մոտենալիս ընկնում էր:

Հելլենիստական ժամանակաշրջանում Հայաստանում հաշվվում

էր շուրջ հիսուն արհեստ: Մայրաքաղաք Արտաշատում կային բազմաթիվ «գործոց տներ», որոնցում պատրաստված զենքերն ու զրահները, շքեղ զգեստները, կահկարասիներն ու պերճանքի առարկաները, բրուտագործական ու մետաղագործական արտադրանքը ոչ միայն ողողել էին քաղաքի շուկան ու խանութները, այլև հասել աշխարհի հեռավոր անկյունները: Արտաշատի հատուկ թաղամասում էր մշակվում նաև որդան կարմիր ներկը, որը շատ մեծ պահանջարկ ուներ հին աշխարհում:



Եվ որքան ծաղկում ու շենանում էր քաղաքը, այնքան դեպի այն էին ձգտում օտար ավարառուները: Մ. թ. 58-ին հռոմեացի Կորբուլոնը հարձակվելով Հայոց աշխարհի վրա, պաշարում է Արտաշատը: Քաղաքը բաց է անում դռները և հանձնվում: Զմեռելուց հետո հռոմեացիները ուղղվում են դեպի Տիգրանակերտ, բայց մինչ այդ կործանում են աշխարհահռչակ քաղաք Արտաշատը: Պատմիչ Տակիտոսը այսպես է ներկայացնում. «Արտաքսատան (Արտաշատը) հրդեհվեց, քարուքանդ արվեց և հավասարվեց հողին, որովհետև պարիսպների ձգվածության պատճառով առանց պահակազորի չէր կարելի պահել այն, ոչ էլ մենք այնքան ուժ ունեինք, որ զորքը բաժանվեր թե պահակազորն ուժեղացնելու և թե պատերազմը վարելու համար, իսկ եթե մնար մայրաքաղաքն անվթար և առանց պահակազորի, դրանից ոչ օգուտ կար, ոչ փառք»: Թե ինչ մեծ նշանակություն էր տալիս Հռոմը և նրա կայսր Ներոնը Արտա-

շատի գրավմանն ու ավերմանը, վկայում է Տակիտոսը. «Որոշվում է պրինցեպսի համար արձաններ կանգնեցնել, հաղթակամարներ կառուցել և տալ շարունակական կոնսուլություններ, որոշվում է, որ տոնական հայտարարվեն թե՛ տարած հաղթանակի, թե՛ այդ մասին հայտարարվելու և զեկուցելու օրերը, ինչպես նաև ընդունվեն նման այլ որոշումներ...» Վաղ էր, սակայն, Ներոնի ցնծությունը: Յոթ տարի անց նա ստիպված եղավ 50 միլիոն դենար և բազմաթիվ հմուտ վարպետներ տալ Տրդատին՝ ավերված քաղաքը վերականգնելու համար: Ներոնի այս «շռայլությունը» հետևանք էր հայ-պարթևական միացյալ ուժերի Հռանդեայի մոտ տարած հաղթանակի: Հռոմեացիներին մնում էր ոչ միայն Ներոնի իսկ ձեռքով Հռոմում թագ դնել Տրդատի գլխին, այլև շռայլորեն նվերներ տալ Հայոց արքային: Կայսեր «բարի ցանկությունն» էր, որ քաղաքը այնուհետև կոչվեր Ներոնիա, բայց այդ ցանկությունը չիրականացավ:

Դիոն Կասսիոսը նկարագրելով Հռոմում Տրդատի պատվին կազմակերպված շքահանդեսներն ու պատիվները, զարմացած ավելացնում է, որ մի անգամ Տիրիդատեսը պանկրատիոն (ըմբշամարտի և բռնցքամարտի տարրերից կազմված մենամարտի մի տեսակ) էր դիտում, երբ մենամարտողներից մեկը վայր է ընկնում, իսկ մյուսը շարունակում է ընկածին հարվածել: Այս տեսնելով Տրդատը բացականչում է. «Մարտն անարդար է, քանզի արդար չէ ընկնողին ծեծելը»: Հռոմեացիներին, որ հաղթանակի հասնելու համար միջոցների խտրություն չէին դնում, իհարկե, տարօրինակ պիտի թվար Տրդատի ասպետությունը:

Տրդատը Արտաշատը վերականգնելով դարձրեց ավելի ճոխ ու շքեղ: Տեսնելով հին աշխարհի ամենանշանավոր քաղաքներից մեկը՝ Հռոմը, նա ցանկանում էր իր մայրաքաղաքն էլ դարձնել հարուստ ու մեծաշուք:

Իր հետագա պատմության ընթացքում Արտաշատը քանիցս ավերվում ու վերակառուցվում է, բայց Շապուհ Երկրորդի (364—369) արշավանքներից հետո դաժանորեն մահանում է: Քաղաքին հասցված այս մահացու հարվածի մասին այսպես է պատմում Փավստոս Բուզանդը. «Եկան Արտաշատ մեծ քաղաքը գրավեցին, նրա պարիսպները կործանեցին, այնտեղ էլ պահված գանձերը առան և ամբողջ քաղաքը գերեվարեցին: Արտաշատ քաղաքից գերի տարան ինը հազար տուն հրեա, որոնց Արշակունի Տիգրան թագավորը գերի էր բերել Պաղեստինից, և քառասուն հազար տուն հայ: ... Քաղաքի շինություններից փայտաշեններն կրակ տվին այրեցին, քարաշենները քանդեցին, նույնպես և պարիսպը. քաղաքի բոլոր շինվածքները հիմնահատակ կործանեցին, ոչ մի քար քարի վրա չթողին, քաղաքը բնակիչներից թափուր, անմարդ, ավերակ դարձրին»:

IV դարի երեսնական թվականներին Դվին նոր մայրաքաղաքից հետո Արտաշատը արդեն անդարձորեն զիջում է իր դիրքերը, քաղաքական, ռազմական և բնակլիմայական պայմանների պատճառով իսպառ հեռանում պատմության թատերաբեմից:

Այժմ գիտնականներն ու հնագետները պեղում են հին Արտաշատի տարածքը՝ Խոր Վիրապի բլուրներն ու շրջակա դաշտավայրը, և նրանց բրիչի ամեն մի հարվածը, ամեն մի գտածոն օգնում են ավելի լավ պատկերացնել «Հայոց Կարթագենի», «Մեծ ու խիստ գեղեցիկ քաղաք» Արտաշատի պատմությունը:







# Ո՞Վ ԱՍԱՑ, ՈՐ ԹԵԹԵՎ Է...

Աշխատելով «Այդ ոչ թեթև ատլետիկան» գրքի վրա, վերլուծելով պատմական աղբյուրները, մի օր ինքս ինձ մտածեցի. «Իսկ ինչո՞ւ անտիկ 223 օլիմպիադաներից ոչ մեկում չի հանդիպում «թեթև ատլետ» տերմինը, երբ խոսքը վերաբերում է վազողներին, ցատկողներին ու նետողներին: Ուրեմն ո՞վ է հորինել «թեթև ատլետիկա» արտահայտությունը սպորտի այդ դժվարագույն մարզաձևի համար, որը միավորում է այնպիսի հակոտնյա մարզատեսակներ, ինչպես վազքն ու սկավառակի նետումը, ցատկերն ու գնդի հրումը: Այս հարցն իմ մեջ առաջացավ այն ժամանակ, երբ ինքս արդեն հրաժեշտ էի տվել սպորտին:

Ոչ մեկը նրանցից, ում հետ զրուցում էի, չգիտեր, թե որտեղից է առաջ եկել «թեթև» բառը «սպորտի թագուհու» վերաբերմամբ: Ճիշտ է, մի անգամ մի այսպիսի վարկած լսեցի. անցած դարի վերջին վազողների մրցումներում, որոնց մասնակիցներին այն ժամանակ անվանում էին «ատլետիկներ», մեկը բացականչեց.

— Ի՜նչ հասարակ բան է վազելը: Թեթև է այդ ատլետիկան:

Այս, իբր, լսել է մի թղթակից և շտապել իր թերթում վազքի հետ կապված մարզատեսակները կոչել թեթև ատլետիկա (ցատկերի ու նետումների թափավազքերը նույնպես դասեցին վազքաձևերի շարքը): Այդ օրվանից էլ, ասում են, ըսկիզբ դրվեց դրան:

Դժվար է համաձայնել «թեթև» բնորոշմանը: Նրան էլ թեթև չէ և իր բեռնվածությամբ չի զիջում ծանր ատլետիկային: Համաշխարհային մակարդակի ամեն մի արդյունք ձեռք է բերվում տիտանական, գրեթե առավելագույն լարման գնով: Նըշանավոր բիոքիմիկոս Գ. Էրիելը հաշվարկել է այն սահմանը, որից դենը մարդու մկանները, հյուսվածքները ու ոսկորները չեն դիմանա՝ կտրաքվեն կամ կփշրվեն: Թռիչք երկարության սահմանը տղամարդկանց համար, իբր, չի կարող անցնել 8 մ 96 սմ նշագծից: Այդպիսով Բոբի Բիմոնի համաշխարհային ռեկորդը՝ 8 մ 90 սմ, «սահմանամերձ» նվաճում է: Ի դեպ, Բիմոնի ռեկորդային թռիչքի կինոծրագիրը դրվել է ԷՀՄ-ի մեջ և մեքենան գրեթե իդեալական է համարել այն, իսկ կոնքազդրային հոդի բեռնվածությունը հրման պահին հաշվել է 770 կգ, վերջնասահմանին մոտիկ: Հապա մի մտածեք. ոտքի վրա եղել է երեք քառորդ տոննա բեռնըվածություն:

Ահա ձեզ և թեթև ատլետիկա:

**ԹԱՄԱՐԱ ՊՐԵՍ**
սպորտի վաստակավոր գործիչ, օլիմպիական եռակի չեմպիոն, մանկավարժական գիտությունների թեկնածու



## ՈՒՆԵՑՎԱԾՔԴ ԱՉՔԻՍ ԱՌԱՋ ԼԻՆԻ

Շվեդներն այս հայտնի իմաստությունն են հիշում ամեն անգամ տեսնելով զվարճալի մեքենա-տնակը, որ պատկերված է նկարում: Այն զարգացնում է ժամում մինչև ութսուն կիլոմետր արագություն: Անսովոր տնակի տերը բնավորությամբ տնակյաց է, սակայն գործի բերումով ըստիպված է հաճախ շրջագայել: Բայց շնորհիվ ավտոմեքենայի և բնակարանի համատեղման, նա միշտ իր տանն է:

# ՓՈՔՐԻԿ ԱՆԳԼԻԱՑԻՆ, ՈՐԻՆ ՉԿԱՐՈՂԱՑԱՆ ՃԻՊՈՏԱՀԱՐԵԼ

Ջեֆրի Քոզոնսն այժմ քսան տարեկան է: Մեծ Բրիտանիայի պատմության մեջ նա մտել է որպես միակ դպրոցականը, որը թույլ չի տվել իրեն ճիպոտահարել: Բանն այն է, որ անգլիացի ուսուցիչները մինչև օրս զանցառու երեխաներին պատժում են ճիպոտահարությամբ: Բայց երբ սկսեցին Քոզոնսին ծեծել, դուրս պրծավ ուսուցչի ձեռքից և փախավ տուն: Երևի, նա իրեն անմեղ համարեց, գուցե և այդպիսի պատժի համար բավականին տարիքո՞վ էր. այն ժամանակ նա տասնչորս տարեկան էր...

Այդ նույն օրը Քոզոնսի ընտանիքը դպրոցի դիրեկցիայից ծանուցում ստացավ, որով հայտնվում էր, թե Ջեֆրին հեռացվում է դպրոցից այնքան ժամանակ, մինչև որ կամավոր կերպով թույլ տա իրեն ճիպոտահարեն: Ջեֆրիի մայրը մտածմունքի մեջ ընկավ. «Հոլանդիան դադարել է իր դպրոցականներին ծեծել 1850 թվից, Ավստրիան՝ 20 տարի անց, և 17 տարի անց՝ Ֆրանսիան: Մինչև ե՞րբ պետք է մեր երեխաները ծաղրուծանակի ենթարկվեն»:

Եվ նա որոշեց անգլիական մանկավարժությանը մարդու իրավունքների պաշտպանության Եվրոպական դատարանի դատին ներկայացնել: Դատական նիստը տեղի ունեցավ Ստրասբուրգում: Դա 1976 թվի սեպտեմբերին էր: Իսկ վեց տարի անց Եվրոպական դատարանը որոշեց, որ առանց ծնողների համաձայնության ճիպոտահարությունը մարդու իրավունքների ու ազատության մասին Եվրոպական պայմանագրի խախտում է: Պայմանագիր, որը ստորագրել էր նաև Մեծ Բրիտանիան: Վճիռը ոտքի հանեց անգլիական հասարակայնությանը: Ամենից շ·ա· անհանգստացավ ուսուցիչների Ազգային միությունը: «Ինչպե՞ս նրանց չճիպոտահարել,— ասվում էր պաշտոնական դիմումում,— երբ շաբաթը երեք անգամ աշակերտները բռունցքներով հարձակվում են ուսուցիչների վրա»:

Չծեծել՝ վտանգավոր է: Արի ու տես, որ մանկավարժական ողջ համակարգը փուլ կգա: Մյուս կողմից, ճիպոտահարել՝ Եվրոպայի առջև ամոթ է: Դրան ավելացրած պայմանագրի խախտումը... Միայն այդ ողջ իրարանցման մեղավոր Ջեֆրի Քոզոնսն էր, որ չէր մասնակցում թեժ վեճերին: Հավանաբար այն պատճառով, որ նա արդեն հասունացել էր և այլ հոգսեր ուներ: Դրանցից ամենագլխավորը՝ որտե՞ղ աշխատանք գտնել:

Երկրում գոյություն ունեցող գործազրկության պայմաններում դա այնքան էլ հեշտ չէ: Հետաքրքիր է, եթե այժմ նրան որևէ մեկն առաջարկեր. «Աշխատանքի կվերցնեմ, բայց մինչ այդ, ինչպես պետք է, կճիպոտահարեմ»,— կհամաձայնե՞ր նա, թե՞ ոչ:

## ԵՐԱԺՇՏԻ ԵՐՐՈՐԴ ՁԵՌՔԸ



Հնուց ի վեր նվագախմբի երաժիշտները բախվում են, թվում է, շատ հասարակ, բայց դժվարահաճ մի պրոբլեմի՝ ինչպես շրջել նոտաները, որ նվագը չընդհատվի: Այս խճճված խնդրի յուրատեսակ լուծում է առաջարկել շվեյցարացի գյուտարարների խումբը: Նրանք ստեղծել են փոքրիկ ռոբոտ, որ փաստորեն երաժշտի երրորդ ձեռքն է, նրա հրամանով թերթում է էջը. պետք է միայն սեղմել ոտնակը:

Նորածինը արու էր: Աղվես մայրիկը և Աղվես հայրիկը ողջագուրվեցին, իսկ հինգ Աղվեսիկ քույրիկները թռչկոտում էին, թավալվում:

Աղվեսիկ-որդին սկսեց մեծանալ: Նա շատ երջանիկ էր, որովհետև նրան շատ էին սիրում մայրիկը, հայրիկը և քույրիկները:

Անտառը հեքիաթային էր, երկինքը անհասանելի ու կապույտ, ծաղիկները անսահման գույնզգույն, իսկ թփի տակից աչքով անող կարմիր մորին արժեր ամեն, ամեն ինչ: Աղվես-մայրիկը ամենանտնարար մայրիկն էր, Աղվես-հայրիկը ամենաաշխատասեր հայրիկը, իսկ Աղվեսիկ-քույրիկները ամենագեղեցիկ ու ամենաչարաճճի քույրիկները:

Առյուծը, որ անցնում էր նրանց տան մոտով, չգիտեր Աղվեսիկ-որդու երջանկության մասին: Անցնում էր իր համար, տեսավ Աղվեսի ընտանիքը և, սովորության համաձայն, մռնչաց.

— Այս ի՞նչ տհաճ ձայն էր,— գլուխը բարձրացրեց Աղվեսիկ-որդին,— դո՞ւ էիր:

Առյուծը չհավատաց ականջներին:

— Անցնում ես, անցիր քեզ համար: Ինչո՞ւ ես անտառի երաժշտությունը փչացնում,— բորբոքվեց Աղվեսիկ-որդին:

— Ի՞նչ: Ի՞նչ,— Առյուծը այնպես շփոթվեց, որ չկարողացավ անելիքը որոշել:

Եվ այստեղ կատարվեց այն, ինչը մենք բոլորս գիտենք, իսկ Աղվեսիկ-որդին չգիտեր:

— Ո՜վ անտառի արքա, հզորների՜ց հզոր,— մեջքը կորացրեց Աղվես-հայրիկը — ների՛ր նրան: Նա դեռ փոքր է, ոչինչ չի հասկանում:

— Ո՜վ աշխարհի ամենամեծ երգիչ, ների՛ր իմ որդուն,— պոչը գալարեց Աղվես-մայրիկը,— նա երաժշտական կրթություն չունի և բավականին բութ է:

— Ո՜վ մեր միակ հայր, մեր միա՜կ տեր,— փարթամ պոչերը օրորեցին Աղվեսիկ քույրիկները,— մեր եղբայրը հիմարիկ է: Ների՜ր նրան:

Առյուծը բարձր տրամադրություն ուներ: Բարեհոգի ժպտաց ու շարունակեց ճանապարհը:

Հայրիկը նստեց որդու առաջ, մայրիկը կանգնեց նրա կողքին, քույրիկները շարվեցին նրանց ոտքերի մոտ ու սկսեցին բացատրել, որ աշխարհում դեռ չի ստեղծվել մի հեքիաթ, որտեղ աղվեսը չքծնի, չխաբի, գետնին քծնելով չգալարի իր փարթամ պոչը:




Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Չի եղել: Պա՞րզ է,— բղավեց Աղվես-հայրիկը:

— Չի էլ լինի,— ճչաց Աղվես-մայրիկը:

— Դու քո վեր տնկած պոչով մի՛ փչացրու մեր մանկությունը,— ծվծվացին Աղվեսիկ-քույրիկները:

Աղվեսիկ-որդին քանի որ լուռ էր, մտածեցին, որ նա խելքի կգա:

Աղվես-հայրիկը եզրափակեց.

— Դու ավելի լավ է վարժություննե՛ր արա, որ փայտացած պոչդ մի քիչ ճկու-

նանա: Մեկ-երկու, մեկ-երկու:

Աղվեսիկ-որդին մնաց յուռ և այդպես յուռ ու անճկատելի հեռացավ:

— Այդ ո՞ւր,— կռնչաց Ագռավը:

— Գնում եմ գտնելու այն հեքիաթը, որտեղ Աղվեսը գետնաքարշ պոչ չունի:

— Կը՜ռռ,— կռավեց Ագռավը,— չկա՛ այդպիսի հեքիաթ:

— Կա՛: Ես կգտնեմ,— ասաց Աղվեսիկ-որդին,— իսկ դու նողկալի ես ծիծաղում:

— Կը՜ռռ,— զայրացած Ագռավը կտուցով խփեց նրա աչքին:

— Դու նողկալի ես ծիծաղում,— կրկնեց Աղվեսիկը և կույր աչքով շարունակեց ճանապարհը:

— Այդ ո՞ւր այդպես,— ատամները կրճտացրեց Գայլը:

— Գնում եմ գտնելու այն հեքիաթը, որտեղ Աղվեսը գետնաքարշ պոչ չունի:

— Չկա՛ այդպիսի հեքիաթ,— ոռնաց Գայլը:

— Կա՛: Ես կգտնեմ,— պատասխանեց Աղվեսիկ-որդին,— իսկ դու գարշելի մռութ ունես:

Գայլը հարձակվեց և սուր ժանիքներով պոկեց նրա ոտքերից մեկը:

— Դու գարշելի մռութ ունես,— կրկնեց Աղվեսիկ-որդին և կույր աչքով ու երեք ոտքով շարունակեց ճանապարհը:

Արնաքամ, ամենադժբախտ ու ամենամենակ Աղվեսը շատ գազանների մոտով անցավ՝ հպարտորեն վեր տնկած պոչը: Եվ երբ ուժահատ նստեց մի քարի, քարի տակից գլուխը հանեց Իժը:

— Այդ ո՞ւր այդպես,— փշշաց Իժը:

— Գնում եմ գտնելու այն հեքիաթը,—մի կերպ շշնջաց Աղվեսը,— որտեղ Աղվեսը գետնաքարշ պոչ չունի:

— Չկա այդպիսի հեքիաթ,— լեզուն հանեց Իժը:

— Կա՛: Ես կգտնեմ,— Աղվեսիկ-որդին ուղղվեց տեղում,— իսկ դու լպրծուն արարած ես:

Իժը խայթեց նրան:

— Դու ամենալպրծուն արարածն ես, — և Աղվեսիկ-որդին գլուխը հենեց քարին ու փակեց աչքերը:

Երեկոյան՝ բոլոր գազանները հավաքվեցին Առյուծի մոտ, որ պատմեն անտառի նորությունները: Եվ երբ պատմեցին Աղվեսիկ-որդու մասին, հանկարծ բոլորը հասկացան, որ կա մի հեքիաթ գետնաքարշ պոչ չունեցող Աղվեսի մասին:

ԼԻԶԱ ԾԱՂԱՐՅԱՆ

1982 ● «ՊԻՈՆԵՐ» ● ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ ● «ՊԻՈՆԵՐ» ● 1982



«Պիոներ» ամսագրի 1982 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց բանասիրության դոկտոր ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆԻՆ՝ «Զրույցներ լեզվի մասին» ակնարկաշարի համար:



Նկարիչ ՖԵԼԻՔՍ ԳՅՈՒԼԱՆՅԱՆԸ «Անմահական խնձորներ» և «Բազեի որսը» պատմվածքների նկարազարդման համար արժանացավ 1982 թ. լավագույն նկարչական ձևավորման մրցանակին:



**Առաջին ուսուցիչը**

«Զրույցներ Ռոսինիի հետ», այսպես է վերնագրել գերմանացի դաշնակահար Ֆերդինանդ Գիլլերը իր գրառումները՝ արված 1855 թվի սեպտեմբերին ֆրանսիական ծովափնյա մի առողջարանում, որտեղ ամեն տարի հանդիպում և զրույցի էր բռնվում «Սևիլյան սափրիչի» փառաբանված հեղինակի հետ:

Մի անգամ Գիլլերը հարցրեց.

— Ո՞րտեղ եք սովորել երաժշտություն:

— Բոլոնիայում,— պատասխանեց կոմպոզիտորը:— Ոմն Պրինետտի Նավարայից: Նա ինձ անկողնուց, որը ինձ բոլորովին դուր չէր գալիս, և ստիպում էր նվագել: Երբեմն վատ հանգստացած լինելով՝ նա հենց այնտեղ էլ քնում էր, կանգնած, մինչ ես վարժվում էի սպինետի վրա: Օգտվելով դրանից՝ ես նորից սահում էի անկողնու մեջ: Իսկ նա, երբ արթնանալով, բռնում էր ինձ այնտեղ, հանգստացնում էի հավատացնելով, որ իր քնած ժամանակ անսխալ նվագել եմ պիեսը...

**Դեբյուտ օպերային բեմում**

Մի անգամ Գիլլերը խնդրում է մաեստրոյին մի բան պատմել իր մանկությունից:

— Չէ՞ որ դուք երեխա եք եղել, երբ սկսել եք օպերաներ գրել: Ինչպե՞ս պատահեց, որ մեներգում նա հարմոնիայի տեսակետից անհավատալի խելահեղ կադենցիա թույլ տվեց: Ես փորձեցի բացատրել նրան, որ պետք է ուշադրություն դարձնի նվագախմբում ընդունված հարմոնիայի վրա, և թվում էր, թե նա յուրովի հասկացավ դիտողության արդարացիությունը: Բայց ներկայացման ժամանակ նորից ազատություն տվեց իր ոգևորությանը և այնպիսի կադենցիա արեց, որ ես ծիծաղս չկարողացա զսպել: Պարտերը նույնպես ուժգին ծիծաղով բռնըվեց և երգչուհին կատաղեց: Նա բողոքեց իր հովանավորին՝ մի շատ հարուստ և անվանի վենետիկցու, որը որպես քաղաքային վարչության ներկա-



սպինետի վրա նվագի դասեր էր տալիս ինձ: Շատ հետաքրքիր մարդ էր: Ինչ-որ լիկյոր էր պատրաստում, երաժշտության դասեր էր տալիս և մի կերպ ծայրը ծայրին հասցնում: Երբեք մահճակալ չի ունեցել, քնում էր կանգնած:

— Ինչպե՞ս թե կանգնած: Դուք կատակում եք, մաեստրո:

— Դա հենց այդպես էր, ինչպես ասում եմ: Գիշերը փաթաթվում էր թիկնոցի մեջ, որևէ ծածկի տակ մի անկյունի հենվում քնում: Գիշերային պահակները նրան գիտեին և չէին անհանգստացնում: Վաղ առավոտյան նա գալիս էր, հանում դուք բեմ ելաք Վենետիկում (խոսքը «Ամուսնության մուրհակի» մասին է, որը բեմադրվել 1810 թվին):

— Պատահականությունն այնպիսի՜ մեծ դեր է խաղում մեր կյանքում,— նկատեց Ռոսինին:— Ես տասներեք տարեկան էի, երբ ինձ որպես maestro al cembalo աշխատանքի հրավիրեցին Սինիգիլյա (քաղաք Անկոնա գավառում) օպերային ողջ թատերաշրջանի համար: Այնտեղ ես ընդհարվեցի երգչուհու հետ, որը վատ չէր երգում, բայց երաժշտական ընդունակությունից զուրկ էր: Մի անգամ մի յացուցիչ ղեկավարում էր թատրոնները և մեծ բարեգործություններ էր անում Սինիգալի թատրոնի համար, և ինձ մեղադրեց անվայել արարքի մեջ ու հայտարարեց, թե անտակտ վարքագծով ես հանդիսատեսների մեջ ծիծաղ եմ առաջացրել: Ինձ հրամայվեց գնալ դաժան պետի մոտ, որը շատ խիստ անպատվեց ինձ: «Եթե դու քեզ թույլ տաս ծաղր ու ծանակի ենթարկել առաջին երգչուհուն,— ասաց նա հրամայաբար,— ես քեզ բանտ կընետեմ»: Նա այդ կարող էր անել, բայց ես թույլ չտվի ինձ ահաբեկել և գործն այլ ըն-

թացք ստացավ: Ես նրան ներկայացրի հարմոնիայի վերաբերող իմ բոլոր պահանջները, համոզեցի նրան իմ անմեղության մեջ, և փոխանակ ինձ բանտ նետելու, նա շատ լավ տրամադրվեց իմ նկատմամբ և վերջում ասաց, որ եթե երբևէ այնքան հաջողակ գտնվեմ, որ օպերա հորինեմ, կարող եմ իրեն դիմել և ինքը հնարավորություն կտա ինձ այդ անելու:

— Եվ նա խոսքի տե՞րը եղավ:

— Նրան եմ պարտական իմ առաջին Scrittura-յին համարով (թատերական հրավեր) Վենետիկում, 200 ֆրանկ աշխատավարձի համար, որն այն ժամանակ ինձ քիչ էր թվում:



### Անեկդոտ, թե՞ փաստ

Վագները սովորություն ուներ իր այցելուներին ընդունել և հյուր գնալ միջնադարյան հագուստով: Մի անգամ Ալեքսանդր Դյուման մտադրվեց այցելել նրան և շատ ծիծաղեց կոմպոզիտորի հագուստի վրա: Դա այնքան էլ դուր չեկավ «Տանհոյզերի» ստեղծողին, և նա սկսեց բոլորի մոտ նրան կոպտել: Սակայն Փարիզ գալով՝ շտապեց պատասխան այցի գնալ Ալեքսանդր Դյումային: Գրողը բավականին երկար սպասեցնել տվեց, իսկ հետո դուրս եկավ ծաղիկներով զարդարված շքեղ խալաթով, փետրավոր գլխարկով և երկարաճիտ կոշիկներով:

— Ներեցեք,— ասաց Դյուման,— որ ձեզ ընդունում եմ աշխատանքային հագուստով. իմ մտքերի կեսը թաքնված են այս գլխարկի մեջ, իսկ մյուս կեսը՝ այս երկարաճիտ կոշիկների, որոնք ինձ պետք են սիրային արկածների նկարագրման համար...

Այս անեկդոտը ներկայացված էր «Ֆիգարոյում» որպես իրողություն:

### Յուրատեսակ մասնագիտություն

Փարիզի հռչակավոր վարձու ծափահարողների մեջ հանդիպում են բավականին հետաքրքիր մասնագիտություններ: Վերջերս ինչ-որ դատաքննության ժամանակ վկաներից մեկը դատավորի այն հարցին, թե ի՞նչ մասնագիտություն ունի, նա պատասխանեց՝ ուշագնաց լինող: Ողբերգական պիեսների ներկայացման ժամանակ սովորաբար նա նստում է առաջին յարուսի օթյակում, այնպիսի տեղ, որ բոլորին տեսանելի լինի: Հեղինակի նշած տեսարաններում նա հանկարծակի ուշագնաց է լինում:

Վկան գտնում էր, որ իր մասնագիտությունը բավականին շահութաբեր է:

### Ե՞րբ սկսել ներկայացումները

Լոնդոնում թատրոնների դիրեկտորները հարց են առաջ քաշել երեկոյան ներկայացումների սկիզբը ժամը 9-ից և 9.30-ից 7-ին տեղափոխելու մասին: Տեղական մամուլը չի հավատում այդ բարեփոխության հաջողությանը, եթե չըփոխվի երեկոյան ժամը 7-ին և 8-ին ճաշելու սովորույթը, որը արմատավորվել է դարերի ընթացքում:

# ՓՐԿԱՐԱՐ ՇՈՒՆԸ



Համարյա յոթ հարյուր տարի առաջ, շվեյցարական Ալպյան լեռներում գտնվող սուրբ Բեռնարի մենաստանում ստացան և սկսեցին բուծել փրկարար շների մի նոր ցեղ, որը նույն մենաստանի անունով կոչվեց սենբեռնար:

Այդ ցեղի շները հայտնի են նրանով, որ ընդունակ են կռահել իրենցից 250—300 մետր հեռու և մինչև 3 մետրանոց ձյան շերտի տակ թաղված մարդկանց առկայությունը: Այս ունակության, ինչպես և խիտ ու երկար մազերի, ցլուտ և ամուր ճանկերով զինված թաթերի, հոտառության, բընազդի շնորհիվ նրանք դարձել են անփոխարինելի՝ փրկարար աշխատանքների ժամանակ: Երբ Ալպյան լեռներում սկըսվում են բուքն ու բորանը, բահերով, ձեռնափայտերով ու այլ հարմարանքներով զինված մարդիկ ելնում են որոնումների, հետները տանելով այդ շներին, որոնց վըզերից կախում են սուրճ ու խմիչքներ պարունակող սրվակներ, իսկ մեջքերին փաթաթում են բրդյա վերմակներ: Մոլորված կամ ձյան տակ մարդ հայտնաբերելու դեպքում շունն ամուր ճանկերով անցք է բացում և զոհին հասցնում վերմակն ու «տաքացնող հեղուկները», ջերմացնում է իր մարմնով, հուսադրում իր ներկայությամբ: Ապա ամենակարճ ճանապարհով վերադառնում է մարդկանց մոտ և հաչոցով հրավիրում է հետևել իրեն: Մեծ է նրանց կողմից փրկված մարդկանց թիվը. միայն Թուրք անունով սենբեռնարը մահվան ճիրաններից 35 հոգի է փրկել:

Հայտնի է, որ 1965 թվի մարտի վերջերին, երկրաշարժի հետևանքով Չիլիում հազարավոր մարդիկ կենդանի թաղվեցին փլատակների տակ, բայց նրանցից 2500 հոգի փրկվեցին այդ շների շնորհիվ, որոնցից Դորո շանը հաջողվեց հայտնաբերել և ազատել 74 մարդ: Երախտապարտ մարդկությունը չի անտեսել նրանց հիշատակը՝ Փարիզի մոտ կանգնեցված է սենբեռնարի արձանը, իսկ աշխարհի բազմաթիվ թանգարաններում պահվում են նրանց մորթիներից պատրաստված շատ բնական խրտվիլակներ:

Այժմ սենբեռնար անունը դարձել է խորհրդանշական: Շվեյցարացի օդաչու Հերման Հեյգինը, որը հմտորեն ու արիաբար ալպյան ձյան գերությունից շատերին է փրկել, «Թռչող սենբեռնար» պատվավոր անունն է ստացել:

Կարծիք կա, որ սենբեռնարները սերվում են նյուֆաունդլենդյան ջրասույզ շներից, ոմանք էլ գտնում են, թե նրանք ծագում են ասիական կամ էլ հարավային հովվաշներից:

Հետաքրքիր է պատմահայր Մովսես Խորենացու հաղորդումը, թե ինչպես հայոց Աքգար թագավորի քույր Ավդեն, ձմեռ ժամանակը դեպի Հայաստան ճանապարհորդելիս, բքի բերանն է ընկնում Կորդվաց լեռներում: Մրրիկը նրան ուղեկցող մարդկանց ցրում է այնպես, որ ոչ մեկը չի իմանում, թե ընկերն ուր քշվեց: Առասպելաբանվում է, թե մի ինչ-որ նորահրաշ, աստվածներից ուղարկված սպիտակ կենդանի փրկում է նրանց: Հրաշքների չհավատացող Խորենացին ավելացնում է՝ «որքան մենք վերահասու եղանք, բանն այսպես է եղել. որոնող մարդկանց հետ եղել է մի սպիտակ շուն», հետևաբար, սենբեռնարներից դեռևս 13 դար առաջ, իսկ Հայաստանում լեռնափրկարար աշխատանքների ժամանակ շներ են օգտագործվել, և ինչ իմանաս, գուցե նրանցից են սերվում փառաբանված սենբեռնարները:

ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ

# ԷՔՍԿՈՒՐՍԻԱ ՔԱՐՏԵԶԻ ՎՐԱ



Չորրորդ դասարանի իմ աշակերտներից մեկը՝ Մերուժանը, ինձ հարցրեց, թե որտեղից են եկել մեր գյուղացիները: Ու ես պատմեցի, շեղվելով դասի օրվա նյութից.

— Մեր գյուղացիները Ջավախք են եկել 1829 թվականին՝ Բասենի հարավում գտնվող Քյուլլի գյուղից: Արաքսն այնտեղ, մեր մեծերի պատմածով, չափազանց ձկնառատ է: Ասում են, որ գյուղացիներից մեկն ունեցել է մի մեծ գոմ, որի միջից աղբյուր էր բխում ու խառնըվում Արաքսին:

Մի օր էլ նույն դասարանի աշակերտների հետ որոշում ենք էքսկուրսիա կատարել... քարտեզով:

— Ո՞ւր եք ուզում գնալ,— հարցնում եմ:

— Քյուլլի...— միաբերան ասում է դասարանը:

— Գյուղն հիմա ավերակ է,— փորձում եմ նրանց հետաքրքրության վրա սառը ջուր լցնել:

— Թող լինի,— ասում են,— գնանք տեսնենք:

— Հարյուր հիսուն տարի է անցել, մեր պապուպապերի թողած տները հիմա քանդված են:

— Թող լինի՛,— բացականչում է դասարանը:

— Դուք կարո՞ղ եք ամեն մեկդ ձեր պապենական տունը գտնել...

— Այո,— ասում են,— կգտնենք:

Ես գրատախտակից կախում եմ պատմական Հայաստանի քարտեզը և սկսում.

— Քյուլլի գնալու համար պետք է գնանք այսպես. սկզբից դեպի Հյուսստ ծովակի, Չըլդըր լճի կողմը, հետո թեքվենք հարավարևմուտք, անցնենք Ախուրյան գետը, գնանք Կարս...

— Չարենցի քաղաքը,— ասում է Համմիկը:

— Այո՛,— հաստատում եմ ու շարունակում. — Ձախ կողմում են մնում Բայազետն ու Ալաշկերտը...

— Հրաչյա Քոչարի ծնված տեղը,— ասում է Նաիրան՝ հիշելով «Հերոսական վերադարձը»:

— Այո,— հաստատում եմ ու շարունակում. — Հետո հասնում ենք Հասան Ղալա անունով մի քաղաք և այնտեղից Արաքսի հետ բարձրանում ենք Քյուլլի:

Երբ գրիչ-ցուցափայտը դնում եմ գյուղի մոտավոր տեղի վրա, դասարանը մրմնջում է.

— Քյուլլին Թուրքիայում է...

— Այո՛, — բայց դա չխանգարեց մեզ շարունակել մեր էքսկուրսիան... քարտեզի վրա: Եվ չխանգարեց, որ աշակերտներից ամեն մեկը, իրենց մեծերի պատմածների հետքերով գնան և գտնեն պապենական հինավուրց տները:

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Վրաց. ՍՍՀ Բոգդանովկայի շրջանի Հեշտիայի № 1 միջն. դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ



ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15:
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻ-ԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՁՈՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 11.12.1982 թ.։ Ստորագրված է տպագրության 24.03.1983 թ.։ ՎՖ 06771։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 70052։ Պատվեր՝ 120։ Գինը՝ 15 կ.։

Сдано в набор 11.12.1982 г. Подписано к печати 24.3.1983 г. Формат 70×100 1/16. ВФ 06771. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч-изд. листа. Тираж 70052. Заказ 120. Цена 15 коп.

ԻՆԴԵՔՍ՝ 77306

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.